ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԿԻՑ ՊԵՏԱԿԱՆ ՁԵՌԱԳՐԱՏՈՒՆ (ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ)
ԳԻՏԱԿԱՆ ՆՅՈՒԹԵՐԻ ԺՈՂՈՎԱԾՈՒ
ԵՐԵՎԱՆ № 2 1949

Լ. ԽԱՉԻԿՅԱՆ պատմ. գիտ. թեկնածու

# ԶԵՆՈՆԻ «ՅԱՂԱԳՍ ԲՆՈՒԹԵԱՆ» ԵՐԿԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆԸ

*1. Զենոն իմաստասերի հրատարակվող աշխատությունը հասել է մեզ երկու՝ ընդարձակ և համառոտ խմբագրություններով:*

*Ընդարձակ խմբագրության պատկանող միակ բնագիրը պահվել է Հայկ. ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պետ. Ձեռագրատան (Մատենադարան) № 5254 ձեռագրում, որն արտագրված է 1280 թվականին, Դեղձուտի վանքում, Գեորգ գրչի կողմից (A. ձեռագիր)*[1]:

*Համառոտ խմբագրության պատկանող ձեռագրերն են.*

*№ 627 (666)*—B.

*Թերթ՝ 275, մեծություն՝ 17×13, նյութ՝ թուղթ, կազմ՝ կաշեպատ տախտակ, գիր՝ բոլորգիր, ժամանակ՝ ՉԿԳ.—1314 թ. գրիչ՝ Թաչիկ:*

*Բովանդակություն.*

*1. էջ 25ա—152բ. Լուծմունք Գրիգոր Աստուածաբանի ճառերի («Յովհաննիսի Երզնկացո, որ և Ծործորեցն աշակերտոյն վարդապետի ասացեալ»):*

*2. էջ 153ա—204բ. Լուծմունք Բարսեղ Կեսարացու ճառերի.*

*3. էջ 205ա—213ա. Լուծմունք Արիստոտելի վասն Աշխարհաց գրոցն.*

*4. էջ 213ա—236բ. Լուծմունք Պորփիւրի.*

*5. էջ 236բ—261բ. Ստորոգութեանցն Արիստոտելի լուծմունք.*

*6. էջ 262ա—269ա. Լուծմունք Սահմանաց գրոց.*

*7. էջ 269բ—275բ.* Յաղագս գիտութեան պիտանացու սեռից (Զենոնի իմաստասիրի):

*№ 3487 (Սևան. 104)*[1]—C

*Թերթ՝ 144, մեծություն 14,5×12, նյութ՝ թուղթ. կազմ՝ կաշեպատ տախտակ, գիր՝ նոտրգիր, ժամանակ՝ ՊԼԸ—1389 թ. գրիչ՝ Յակոբ Ղրիմեցի, տեղի «ի գաւառիս Եկեղեաց, ի հռչակաւոր վանքս, որ կոչի Կապոսի»:*

*Բովանդակություն.*

*1. էջ 4—95. «Համառօտ հաւաքումն յաղագս հոգոյ և զաւրութեանց նորին»:*

*2. էջ 97—165. «Յաղագս առաքինութեանց հոգոյն»:*

*3. էջ 166—276, «Յաղագս բնութեան հրեշտակաց»:*

*4. էջ 278—287.* (Զենոնի իմաստասերի յաղագս բնութեան), *անվերնագիր:*

*№ 1823 (1854)*—D

*Թերթ՝ 405, մեծություն՝ 20×15, նյութ՝ թուղթ, կազմ՝ կաշեպատ տախտակ, գիր՝ բոլորգիր, ժամանակ՝ 1731 թ. գրիչ՝ Մեսրոպ, տեղի՝ Էջմիածին.*

*Բովանդակություն*

*1. էջ 13ա—231բ. «Սիմէոնի Գառնեցւոյ եպիսկոպոսի արարեալ մեկնութիւն գրոցն Պրոկղի»:*

*2. էջ 234ա—345բ. «Նուաստ Մաթէոս վարդապետի…աշխատասիրեալ առ ի հաւաքումն բանից, որ հայի առ վեց աւուր գործս Աստուծոյ, ի խնդրոյ Սարգիս կրօնաւորի»:*

*3. էջ 346ա—386բ. «Արիստոտելի վերլուծական» և այլն.*

*4. էջ 386բ—392բ.* «Զենոնի իմաստասերի յաղագս պիտանացու *սեռից*».

[1] *Այս ձեռագրի մանրամասն նկարագրությունը տես առաջաբանի վերջում:*

[1] *Ն. Մառի կազմած «Ցուցակ համառօտ ձեռագրաց վանուց Սևանայ» (Մոսկվա, 1892 թ.) աշխատության մեջ սույն ձեռագիրը նկարագրված է № 85-ի տակ: Զենոնի աշխատությունը, վերնագիր չունենալով, չի նշվել Ն. Մառի կողմից:*

Այսպիսով՝ ընդարձակ խմբագրությունից մեզ հասել է մեկ ձեռագիր (A), իսկ համառոտից՝ երեք (B, C, D)։

Զենոնի աշխատության այլ արտագրությունները, ինչպես մեր, այնպես էլ այլ մատենադարաններում, մեզ հայտնի չեն։ Կարելի է ենթադրել միայն, որ համառոտ խմբագրության մի արտագրություն կա Վենետիկյան Մխիթարյանների մատենադարանում, որովհետև «Հայկազյան լեզվի նոր բառագրքի» մեջ մուտք են գործել որոշ բառեր այդ խմբագրությունից։

Այսպես օրինակ՝ «եռակարար» բառի օրինակների շարքում մեջ է բերված Զենոնի աշխատության «Յաղագս չափուց» ենթագլխի՝ «Տեղին է եռակարար՝ վերին, ստորին, միջին» (բնագիր էջ 83ա, տող 13-14) և «Զե եռակարար առի՝ եռանկիւնի, քառանկիւնի և բոլոր» (էջ 83ա, տող 20-21) հատվածները։ «Անկրանկուն» բառի կապակցությամբ՝ «Յանկրանկուն լուսոյ և հրոյ» (տե՛ս «Յաղագս գրից» ենթագլուխ, էջ 81ա, տող 13-14) հատվածը և համապատասխան հատվածներ՝ «Համեստական», «Պարպաջմունք», «պատշաճական», «Պղնձոս», «Սեռանայ» և մի շարք այլ բառերի օրինակների բաժնում։

Որպես այդպիսի մեջբերված հատվածներ նրանք նշել են Տօնական ժողովածուն[1] և ոչ մի հիշատակություն չունեն Զենոնի մասին։

2. Զենոնի բնագրի մասին տվյալներ մատենագրական աշխատություններում համարյա ոչինչ չի ասված։

1930 թվականին պրոֆ. Մելիքսեթ-բեկովն իր „К истории точных наук в Армении и Грузии“ աշխատության մեջ[2] հայտնել է, որ էջմիածնում գտնված է էլեացի Զենոնի հունարեն բնագրով մեզ չհասած „Περὶ φύσεως“ («Բնության մասին») աշխատությունը։

Համառոտ խմբագրության բոլոր երեք ձեռագրերի հետ առաջին անգամ ծանոթացել է ակադ. Հ. Մանանդյանը և նրանց ուսումնասիրությամբ կազմել է համառոտ խմբագրության համահավաք բնագիր, նպատակ ունենալով հրատարակել այն[1]։

1942 թվականին, Մատենադարանի ձեռագրերի թեմատիկ բիբլիոգրաֆիայի մեզ հանձնարարված բաժինները կազմելու ժամանակ, № 5254 ձեռագրի հարուստ նյութերի շարքում մեր ուշադրությունը գրավեց անվերնագիր մի արժեքավոր փիլիսոփայական բնագիր, որն, ինչպես պարզվեց հետագայում, Զենոնի հրատարակվող աշխատության ընդարձակ խմբագրությունն էր (A բնագիր)։

3. Ընդարձակ խմբագրության բնագիրը իր ծավալով կրկնակի մեծ է համառոտից։ Այն բաղկացած է հետևյալ մասերից։

(Յաղագս չորի և բարբառոյ)—Ձեռագիր № 5254, էջ 238բ. Յաղագս կատարեալ գիտութեան բանի, էջ 239ա. Յաղագս գործնականին, զոր ի վերայ կատարելութեան բանի ասացելոցն—240ա. (Յաղագս անուրբնականին)—240ա. Յաղագս բարոյականին—240բ. Յաղագս քաղաքականին—240բ. Յաղագս միմիտութեան—241ա. Յաղագս ժամանակի, առանձին—241ա. Յաղագս պլատոնացու սեռից—242ա. (Յաղագս գրից)—242բ. Յաղագս կարգաց—243ա. Յաղագս շրջանացն—243բ. Յաղագս չափուց—244ա. Յաղագս դասութեանց—245ա. Յաղագս աղդմանց—246բ. Յաղագս աստուածախաւսութեան սկզբան և կատարածի, առանձին—248բ. Յաղագս բնութեան, առանձին—249ա. Յաղագս սահմանաց և բաժանմանց, զոր ի վերայ բնութեան ասացելոցն—249բ. Յաղագս ապացուցի և տրամաբանութեան—251ա. Յաղագս իմաստակութեան և վերլուծութեան—251բ. Յաղագս էականութեան, առանձին—252ա. Յաղագս ի ձեռն խնդրականի, զոր ի տեսականէն ասացելոցն—252բ. Յաղագս անմեկնելի որոշման ստորադրութեան էակացն—252բ. Յաղագս զանազանութեան—254ա. Յաղագս գոյացուցչի և մշտաբուխ բառակին, որ է աստուածաբանական շարժման և նյութի, առանձին—254բ. Յաղագս ունայնի, առանձին—255ա. Յաղագս անբաւի—255 ա. (Թարգմանչի կողմից խորհրդածություն)—255բ.

4. Գլուխների և ենթագլուխների սույն դասավորությունը թվում է տարօրինակ։

---

[1] Զենոնի աշխատության այլ ընդօրինակությունները գտնելու նպատակով՝ մենք ծանոթացանք Մատենադարանի №№ 993, 996 ձեռագիր Տօնականների հետ։ Այդ աշխատանքը չտվեց ցանկալի արդյունք։

[2] Տես Вопросы философии и социологии марксизма, изд. ЗКУ, кн. II, Тбилиси. 1930 г. стр. 192.

[1] Հարևանցի կերպով ծանոթանալով մեր կատարած աշխատանքին՝ ակադ. Հ. Մանանդյանն իր կազմած բնագիրը 1946 թվականին հանձնեց մեզ։ Խնամքով կատարված այդ աշխատանքը, համահավաք բնագիրը կազմելու ընթացքում մեծապես օգնեց մեր աշխատանքին, որի համար և հայտնում ենք նրան խորին շնորհակալություն։

Նախ, այն հակասության մեջ է մտնում աշխատության «Յաղագս ազգմանց» ենթագլխում շարադրված այն մտքի հետ, ըստ որի «մակացելին է արհեստ և բաժանի ի տեսակս չորս՝ ի գործնական և ի բանական, ի տեսական և յիմացական» (բն. էջ 86բ, տող 21—23). և կամ. «(իմաստասիրութիւն) է արհեստ արհեստից և մակացութիւն մակացութեանց։ Արդ՝ արհեստիցն է գործնականն իսկ արհեստ՝ բանականն և մակացութեանցն է տեսականն, իսկ մակացութիւն՝ իմացականն» (Բն. «Յաղագս սահմանացն բաժանմանց» ենթագլուխ, էջ 90ա, տող 40—90բ, տող 3)։

Արդ՝ սպասելի էր տեսնել աշխատության կառուցվածքը վերոհիշյալ սկզբունքով. այսինքն, Յաղագս պիտանեացս սեռից գլխից հետո (որի վերջին ենթագլուխն է «Յաղագս ազգմանց»-ը), պետք է շարադրվեին գործնական, և ապա՝ բանական, տեսական ու իմացական «մակացությունների» ենթագլուխները։ Սակայն մեզ հասած բնագիրը սկսվում է «Յաղագս չարի և բարւոյ» ենթագլխով, որը, ինչպես պարզվում է նույն՝ «Յաղագս ազգմանց» ենթագլխից, իմացականի մասը պետք է կազմեր։

Ըստ այդ ենթագլխի «իմացականին (մասունք են)՝ չար և բարի (ա), ժամանակ (բ), կատարելութիւն բանի (գ), սկիզբն և կատարած (դ), բնութիւն՝ սահմանական և արարչական (ե), էականութիւն (զ), նիւթ և շարժումն (է), ունայն (ը), անբաւ (թ)...։» (Բն. էջ 87ա, տող 7—11)։

Իսկ բնագրում «իմացական»-ի այս ենթագլուխները անջատված են միմյանցից ու ցրված աշխատության այլ և այլ մասերում, որով և խախտված է բնագրի տրամաբանական շարադրանքը։

Երկրորդ՝ մի շարք գլուխների վերնագրերում հանդիպում ենք «առանձին» բառին («Յաղագս բնութեան, առանձին», «Յաղագս ժամանակի, առանձին» և այլն), և «զոր ի վերա (այս կամ այն ենթագլխի) առադրեցին» արտահայտությանը։

Ինչու համար են այս անդեմ արտահայտությունները, հեղինակի գրչից են նրանք դուրս եկել, թե խմբագրական հավելումներ են, իսկ եթե խմբագրական հավելումներ են՝ ինչ նպատակի են ծառայել։

5. Հայ իմաստասիրական գրականության մեջ տարածված է եղել Էլիասին վերագրված «Մեկնութիւն ստորոգութեանցն Արիստոտելի» աշխատությունը։ Նրա ազդեցությամբ գրվել են մի շարք փիլիսոփայական երկեր ու մեկնություններ։

Այդ աշխատության մեջ, ի տարբերություն մեր բնագրի, իմաստասիրությունը բաժանված է ոչ թե չորս, այլ երեք բաղկացուցիչ մասերի։

«Իմաստասիրութիւն,—ասված է այնտեղ,—յերիս բաժանի՝ ի տեսականն, ի գործնականն, ի բանականն»[1]։

Ինչպես տեսնում ենք, այստեղ բացակայում է իմաստասիրության զենոնյան բաժանման չորրորդ բաղկացուցիչ մասը՝ իմացականը։

Առաջնորդվելով արիստոտելյան հեղինակավոր մեկնիչի այս դրույթով, Զենոնի բնագրի խմբագիրներից մեկը, ըստ երևույթին, ընկել է բնական տարակուսանքի մեջ, և այդ երկու աղբյուրների միջև գոյություն ունեցող ակնհայտ հակասությունն աշխատել է մեղմել լուծարքի ենթարկելով Զենոնի բնագրի «իմացական»-ին վերաբերող ենթագլուխները։

Իմացական մակացության «Յաղագս չարի և բարւոյ» առաջին ենթագլուխը նա տեղափոխել է աշխատության սկիզբ. երկրորդ՝ «Յաղագս ժամանակի» ենթագլուխը՝ «Յաղագս գործնականի» գլխից հետո, և այսպես հերթականությամբ նաև մյուս ենթագլուխները։

Հարթելու համար իր խմբագրական աշխատանքի ակնառու թերությունները, նա դիմել է երկու միջոցի. որպես ամբողջության լուծարքի ենթարկած և բնագրի տարբեր մասերում տեղափոխված իմացականի ենթագլուխների վերնագրում նա ավելացրել է «առանձին»[2] բառը, իսկ հաջորդ գլուխնե-

[1] Մեկնութիւն ստորոգութեանցն Արիստոտելի, յընծայեալ Էլիասի իմաստասիրի. ի լոյս էած Յ. Մանանդեան. Ս. Պ. Բ. 1911 Թ. էջ 14։

[2] «Առանձին» բառը գտնվում է միայն իմացականի ենթագլուխներին կից։ Այդ բառը բացակայում

րի հետ այդ անդահանված ներթագլուխները շաղկապելու նպատակով, ավելացել է նաև «զոր ի վերա առաքեցին» այս կամ այն ներթագլխի անվան (ով առաքեց) դարձվածքը[1]։

Վերոհիշյալից զատ, ըստ երևույթին, նույն խմբագիրը, «Յաղագս պիտանացու սեռից» գլխից հետո և բնագրի վերջում թողել է համառոտ ամփոփումներ՝ աշխատության բովանդակության մասին։ Այդ հատվածները թողեցինք բնագրում, անջատելով բուն տեքստից աստղանիշերով (տես՝ էջ 87բ, տող 11—26 և էջ 97բ, տող 18—98բ, տող 7)։

Եվ ահա, այսպիսի խմբագրական աշխատանքի շնորհիվ ընդարձակ բնագիրը մեզ հասել է գլուխների անտրամաբանական շարահյուսությամբ։

6. Խմբագրի աչքից վրիպել է «Յաղագս ազգմանց» ներթագլխում գտնվող ուշագրավ հատվածներից մեկը, որը հնարավորություն է տալիս վերականգնելու Զենոնի աշխատության բնագրի սկզբնական կառուցվածքը։

Ընդհանուրի բերելով, «Յաղագս պիտանացու սեռից» գլխում շարադրված մտքերը բնության մասին, հեղինակը համառոտակի հայտնում է դրանից հետո շարադրվելիք նյութի ծրագիրը բաժիններով և ներթաբաժիններով։

«Մակացելին,—գրում է նա,—է արհեստ, և բաժանի ի տեսակս չորս՝ ի գործնական և ի բանական, ի տեսական և յիմացական։ Եւ գործնականն՝ ի տնաւրինական, ի բարոյական և ի քաղաքական։ Եւ բանականն՝ յապացուցական, ի տրամաբանական, յիմաստական, ի բաժանական, ի վերլուծական, ի սահմանական։ Եւ տեսականն, ի ձեռն որոյ՝ խնդրականն, ի գիտութականն, յանմեկնելի որոշումն, ի ստորոգութիւնս էակացն, յանդէմ կացուցութիւնս, ի պատճառ մակացութեան, ընդ որով՝ մասամբ վերաբերութիւն, յեղանակ վարդապետականին։ Իմացականն (մասունք են)՝ չար և բարի, ժամանակ, կատարելութիւն, սկիզբն և կատարած, բնութիւն սահմանական և արարչական, էականութիւն, նիւթ և շարժումն, ունայն, անբաւ»։ (Բն. էջ 86բ, տող 21—էջ 87ա, տող 11)։

Ինչպես դժվար չէ նկատել, մեջ բերված հատվածի և աշխատության գլխակարգության միջև, բացի վերջին՝ «իմացական» գլխի բաժինների ցրիվ վիճակից, էական այլ տարբերություն չկա։

Միակ ներթագլուխը, որի մասին մեջ բերված հատվածում հիշատակություն չկա, «Յաղագս միմոսութեան» ներթագլուխն է։ Այն հատված է ճարտասանական ինչ որ երկից, ոչ մի առնչություն չունի Զենոնի բնագրի հետ, և, ինչպես կտեսնենք, իրավամբ բացակայում է համառոտ խմբագրությունից։

7. Այսպիսով, միջոց ենք ստանում՝ վերականգնելու Զենոնի աշխատության սկզբնական կառուցվածքը։ Վերականգնված բնագիրը բաղկացած է հինգ գլուխներից և 24 ներթագլուխներից հետևյալ դասավորությամբ։

### 1. ՅԱՂԱԳՍ ՊԻՏԱՆԱՑՈՒ ՍԵՌԻՑ

ա. (Յաղագս գրից), բ. Յաղագս կարգաց, գ. Յաղագս շրջանաց, դ. Յաղագս չափուց, ե. Յաղագս զուգութեանց, զ. Յաղագս ազգմանց.

### 2. ՅԱՂԱԳՍ ԳՈՐԾՆԱԿԱՆԻ

ա. (Յաղագս տնաւրինականին), բ. Յղ. բարոյականին, գ. Յղ. քաղաքականին.

### 3. (ՅԱՂԱԳՍ ԲԱՆԱԿԱՆԻՆ)

ա. Յաղագս սահմանաց և բաժանմանց, բ. Յղ. ապացուցի և տրամաբանութեան, գ. Յղ. իմաստակութեան և վերլուծութեան.

### 4. (ՅԱՂԱԳՍ ՏԵՍԱԿԱՆԻՆ)

ա. Յաղագս խնդրականի և գիտութականի, բ. Յղ. անմեկնելի որոշման և ստորոգութեան էակացն, գ. Յղ. ընդդիմակայից.

### 5. ՅԱՂԱԳՍ ԻՄԱՑԱԿԱՆԻՆ

ա. Յաղագս չարի և բարւոյ, բ. Յղ. կատարելոյ գիտութեան բանի, գ. Յղ. ժամանակի, դ. Յղ. սկզբան և կատարածի. ե. Յղ. բնութեան, զ. Յղ. էականութեան, է. Յղ. շարժման և նիւթի, ը. Յղ. ունայնի, թ. Յղ. անբաւի։

8. Համառոտ խմբագրության բնագրերը ժամանակով կրտսեր են ընդարձակից, սակայն, ծագել են ավելի հին ձեռագրերից, քան A. բնագրի նախագաղափարը։

---

է միայն «Յաղագս չարի բարւոյ» և «Յղ. կատարելութեան բանի» ներթագլուխներից, որոնցից առաջինը չունի նույնիսկ վերնագիր։

[1] Այս դարձվածքը գրված է միայն իմացականի ներթագլուխներին հաջորդող գլուխների վերնագրերում։

Համառոտ խմբագրության կազմողը օգտագործել է մի բնագիր, որի մեջ գլուխների շարահարությունը խախտված չի եղել, այլ ունեցել է ճիշտ այն կառուցվածքը, որն աշխատեցինք վերականգնել «Յաղագս ազգմանց» ենթագլխի տվյալներով։

Համառոտ խմբագրության B և D բնագրերը պարունակում են ընդարձակի 1-ին և 2-րդ գլուխներն ամբողջապես, 4-րդ գլխից Բ. և 5-րդ գլխից Ը. և Թ. ենթագլուխները։ Բացի այդ B և D բնագրերում մուտք է գործել «Յաղագս բովանդակութեանն» վերնագրով մի ենթագլուխ (տես՝ բն. էջ 88ա, տողատակ), որն անտարակույս ոչ մի առնչություն չունի Զենոնի աշխատության հետ։ Այդ մասին B բնագրի արտագրողը թողել է ուղղակի վկայություն. նա հետագայում մտած այդ ենթագլուխը վերնագրել է «Յաղագս բովանդակութեան, յայլ գրոց» խոսքերով, ցանկանալով ասել, որ այն բնագրի մեջ է մուծված հետագայում այլ գրքից։[1]

Այսպիսով, համառոտ խմբագրությունը կազմված է հետևյալ գլուխներից ու ենթագլուխներից։

1. ՅԱՂԱԳՍ ԳԻՏԱՆԱՑՈՒ ՍԵՌԻՑ

ա. (Յաղագս գրից), բ. Յղ. կարգաց, գ. Յղ. շրջանաց, դ. Յղ. չափուց, ե. Յղ. զուգութեանց, զ. Յղ. ազգմանց.

2. (ՅԱՂԱԳՍ ԳՈՐԾՆԱԿԱՆԻՆ)

ա. (Յաղագս տնաւրէնականին), բ. Յղ. բարոյականին, գ. Յղ. քաղաքականին.

3. (ՅԱՂԱԳՍ ՏԵՍԱԿԱՆԻՆ)

ա. Յաղագս անմեկնելի որոշման և ստորոգութեան էակաց.

4. (ՅԱՂԱԳՍ ԻՄԱՑԱԿԱՆԻՆ)

ա. Յաղագս անբաւի, բ. Յաղագս ունայնի։

C բնագիրը (Հակոբ Ղրիմեցու) թերի է արտագրված, այն ավարտվում է «Յաղագս ազգմանց» ենթագլխի կեսին, «...ի ձեռն որոյ խնդրականն» բառերով (բն. էջ 87ա, տող 2), ուստի և պարունակում է միայն «Յաղագս գիտանացու սեռից» գլուխը։

9. Հրատարակվող բնագրի նախնական վերնագիրը մեզ չի հասել։

A ձեռագրի գրիչը, սահմանազատելու համար՝ աշխատությունը նախորդ հոդվածից (գուշակություններ), որպես վերնագիր դրել է «Այլ բանս» բառերը։ Ըստ երևույթին Գևորգ գրչի նախագաղափար օրինակի սկզբից ընկած է եղել մի թերթ։ Այդ թերությունը նկատվում է նաև այն ենթագլխի բովանդակությունից, որն A բնագրում արտագրվել է սկզբում («Յաղագս չարի և բարւոյ»)։

Ենթագլուխը հեղինակը կազմել է հինգ ենթաբաժիններից, որոնցից պահվել են միայն երրորդի վերջին մասը և չորրորդն ու հինգերորդը (տես բն. էջ 93ա, տող 13)։

Անվերնագիր է նաև C բնագիրը, իսկ B և D բնագրերում առաջին գլխի վերնագիրը՝ «Յաղագս գիտանացու սեռից», ընդհանրացված և դարձված է ողջ աշխատության վերնագիր։

Աշխատության նախնական վերնագիրը որոշելու գործին այս անգամ էլ նպաստում է «Յաղագս ազգմանց» ենթագլուխը։ Այդտեղ հեղինակը՝ «Մակացութեան արհեստ»-ը բաժանելով մեզ արդեն հայտնի չորս բնագավառների, տալիս է դրանցից յուրաքանչյուրի սահմանումն ու քննության ենթակա հարցերը։ Նա գրում է.

«Սահման գործնականին են՝ կամք, յաւժարութիւն, ընտրողութիւն, բարկութիւն, ցանկութիւն։ Եւ բանականին՝ անուն և բայ, բան և բացերևական բան, ստորասութիւն և բացասութիւն։ Իսկ տեսականին՝ զգացութիւն, երևակայութիւն, կարծիք, տրամախոհութիւն, միտք։ Եւ իմացականին՝ որոշմունք մտաց, իմաստք և խորհուրդք, գիտութիւն և յառաջտեսութիւն» (բն. էջ 87ա, տող 13—22)։

Իսկ այս բոլորի ընդհանրությունը, հանրագումարը, ըստ հեղինակի՝ է բնութիւնը, բնության ուսումնասիրությունը. «Իսկ կալմունք արհեստից է բնութիւն...» գրում է նա (էջ 87ա, տող 23)։

Եվ քանի որ աշխատության մեջ քննարկված են վերոհիշյալ բոլոր հարցերը

[1]. Ղ. Ալիշանին ծանոթ է եղել այդ գլխի բովանդակությունը։ Նա իր «Հին հաւատք...» աշխատության 64-րդ էջում մեջ է բերել Հրատափ, սարատափ, քարատափ, նաղատա ծովային հողմերի անունները համապատասխան այդ գլխի։

նշված հերթականությամբ, ուստի, բնական է ենթադրել, որ աշխատությունը կրել է «Յաղագս բնութեան» վերնագիրը։

10. Հեղինակի մասին վկայություն պահպանած միակ ձեռագիրը D-ն է. այդ ձեռագրում աշխատությունը վերնագրված է այսպես՝ «Զենոնի իմաստասիրի Յաղագս պիտանացու սեռից»։

Դիոգենես Լաերտացու (3-րդ դար, մ. թ.) հեղինակավոր վկայությամբ հունական մատենագիրների շարքում գործել են Զենոն անվամբ ութ հեղինակներ, որոնցից չորսը եղել են իմաստասերներ։ Դրանք են.

1. Զենոն Էլեացի (5-րդ դար, ն. մ. թ.).
2. Զենոն Մնասեասի որդի, ստոյիկյան դպրոցի հիմնադիր (320°—370°).
3. Զենոն Սիդոնացի, էպիկուրյան փիլիսոփա (2-րդ դար, ն. մ. թ.).
4. Զենոն Տարսոնցի, ստոյիկյան փիլիսոփա.

Արդ, վերոհիշյալ Զենոններից ո՞րն է հրատարակվող աշխատության հեղինակը։

11. Այս հարցի վերջնական պատասխանը հնարավոր կլինի առաջադրել վերոհիշյալ Զենոնների մասին եղած մատենագիտական տվյալների մանրակրկիտ ուսումնասիրությամբ և նրանց աշխատություններից մեզ հասած բեկորների քննությամբ, մի աշխատանք, որ վեր է մեր հնարավորություններից։

Սակայն մեր կողմից շարադրվող մի քանի հարևանցի դիտողությունների միակ նպատակն է՝ նպաստել հետագա ուսումնասիրողներին՝ հեղինակի որոշման ուղղությամբ կատարելիք իրենց աշխատանքներում։

Հայաստանում, իմաստասիրական դպրոցի գործունեության շրջանում և հետագայում, Արիստոտելի ու Պլատոնի հետ մեկտեղ իմաստասիրական մտքի ուշադրության առարկա է եղել ստոյիկյան դպրոցի հիմնադիր Զենոնը։ Եվ այլ կերպ չէր էլ կարող լինել, որովհետև 5—7-րդ դարերում Հայաստանում փիլիսոփայական գրականությունը ստեղծվեց ու զարգացավ Նոր-պլատոնական փիլիսոփայական դպրոցի այս կամ այն թևին հարած եկեղեցական գործիչների թարգմանչական ու ստեղծագործական գործունեության շնորհիվ։

Իսկ Նոր-պլատոնականությունը ոչ այլ ինչ էր, եթե ոչ «ստոյիկյան, էպիկուրյան և սկեպտիկյան ուսմունքների ֆանտաստիկ զուգակցումը Պլատոնի և Արիստոտելի փիլիսոփայական բովանդակության հետ»։[1]

Մարքսի հանճարեղ այս դրույթը հիմնավորվում է նաև հայկական փիլիսոփաների մի շարք արտադրանքներով, որոնց նպատակն է եղել «ֆանտաստիկ զուգակցմամբ» հաշտեցնել միմյանց պլատոնական, արիստոտելյան և ստոյիկյան փիլիսոփայական ուղղությունները։

Հատվածաբար ծանոթանանք նման գործունեության արդյունք հանդիսացող աշխատություններից մեկի հետ, որ կրում է «Սահմանք փիլիսոփայականք» վերնագիրը և արժանի է հատուկ ուսումնասիրության.[2]

«Սահման է ըստ Պղատոնի բան ի սեռէ և ի տարբերութենէ, և կամ տարբերութեանց մեկնողական էութեանց բանից իրաց։ Իսկ ըստ Արիստոտելի բան, որ զինչէրն զոլ յայտնեցի զինչզոլոյն զինչէն հաւասար կարօղութեամբ։ Իսկ ըստ Զենոնի բան ըստ վերլուծութեան կատարօղին յառաջ բերել...։

«Անուն է ձայն արարօղի կամ կրօղի կամ ձայն նշանական ըստ զուգադրութեան առանց ժամանակի, որոյ ոչինչ է մասանցն նշանակ առանձնեալ, բայց ձայն նշանական ըստ զուգաւորութեան հանդերձ ժամանակաւ։ Իսկ որպես Պղատոն՝ ձայն գործոյ նշանակ, իսկ անուն է երկօրում(ր)ը հասարակ մասն նուաստ բանի, յոր նախ յանձառի բան։ Իսկ որպես ստոյիկեանքն՝ անուն է ձայն նշանական որպես մարդ...։

«Ձայն է ըստ Պղատոնի վերաւորումն աւդոյ անպատկան և անմարմին, իսկ ըստ ստոյիկեանց՝ աւդ վերաւորեալ՝ լսելեաց զգալի և մարմին։ Իսկ ըստ Արիստոտելի՝ հայթիւն և շարժութիւն աւդոյ...։

«Տրամութիւն է անբան ամփոփումն, շարժումն անբանի մասին անձին՝ որպէս [ասէ] Զենոն...»։[3]

Այն դեպքում, երբ «Սահմանք փիլիսոփայականք»-ի հեղինակը որևէ իմաստասիրական տերմինի սահմանումը ձևակերպելիս ձեռք տակ չի ունեցել Զենոնի կարծիքը, նա ամենուրեք փոխարինել է այն ստո-

[1] Маркс и Энгельс, Собр. соч. I. V. стр. 122.

[2] Ձեռագիր № 464, էջ 202ա—215ա։ Սույն աշխատությունը պահպվել է նաև № 5244 (A) ձեռագրում, թերի վիճակում. գրիչն այդ առթիվ գրում է. «Աւրինակս այս չափ էր. և բանս ոչ աւարտեցաւ, և (ի) գիշերի գրեցաւ, գի շտապ էր»։

[3] Ձեռագիր № 464, էջ 202բ, 203ա և 211ա։

յիկյան դպրոցի կողմից այդ հարցի առթիվ մշակված կարծիքում։ Որովհետև, ինչպես տեսցինք, նրա նպատակն է եղել հաշտեցնել միմյանց վերոհիշյալ երեք փիլիսոփայական ուղղությունները։

Սույն փաստերը իրավունք են տալիս կարծելու, որ 5—7-րդ դարերում հայ իմաստասերների միջավայրում, ստոյիկյան դպրոցի հիմնադիր Զենոնի ուսմունքը ուշադրության առարկա էր կենտրոնում, ուստի բնականաբար, հայ թարգմանիչները շահագրգռված պետք է լինեին հայերենի թարգմանելու նրա (և ոչ ուրիշ մի Զենոնի) որոշ աշխատությունները։

Ավելացնենք նաև այն, որ Դիոգենես Լաերտացին ստոյիկյան դպրոցի հիմնադիր Զենոնի աշխատությունների շարքում նշում է նաև Περὶ φύσεως («Յաղագս բնութեան») վերնագրով մի աշխատություն։[1] Իսկ ինչպես աշխատեցինք պարզել, հրատարակվող բնագրի վերնագիրը եղել է նույնը՝ «Յաղագս բնութեան»։

Ուստի և, իմաստասեր Զենոնի ով լինելու հարցի վերջնական պարզաբանումը թողնելով փիլիսոփայության պատմության մասնագետներին, անհավանական չենք համարում, որ հրատարակվող բնագիրը ստոյիկյան դպրոցի հիմնադիր, Մնասեասի որդի Զենոնի, հունարենով մեզ չհասած «Περὶ φύσεως» աշխատության թարգմանությունն է։

13. Թարգմանության ժամանակի որոշման համար հրատարակվող բնագիրը ուղղակի վկայություններ չի պահպանել։ Բնագրի բառամթերքի ու լեզվի մանրակրկիտ քննության ճանապարհով հնարավոր է միայն մերձավորապես որոշել թարգմանության դարաշրջանը։

Զենոնի երկի թարգմանիչը ծանոթ է եղել 5—7-րդ դարերում կատարված թարգմանություններին։ Նրա վրա հատկապես ակնհայտ է Դիոնիսիոս Թրակացու քերականության թարգմանական բնագրի ազդեցությունը։ Այդ երևում է ոչ միայն Թրակացու քերականության թարգմանության միջոցով ժողովրդականություն ստացած բազմաթիվ տերմինների նույնիմաստ գործածությունից այդ երկու բնագրերում[1], այլ և, համանման հատվածների առկայության դեպքում, ամբողջական հատվածների բառացի նույնությունից։

Երկու բնորոշ օրինակների համադրությամբ պարզ կլինի Զենոնի երկի թարգմանչի ծանոթությունը Թրակացու քերականության հայերեն բնագրին։

### ԱՐՈՒԵՍՏ ԴԻՈՆԻՍԵԱՑ ՔԵՐԱԿԱՆԻ[2]

Քերականութիւն է հմտութիւն, որք ի քերթողացն և ի շարագրաց իբրու բազում անգամ ասացելոց։

Եւ մասունք են նորա վեց. նախ՝ վերծանութիւն, ներկուռ ըստ առոգանութեան, երկիր՝ զբուցատրութիւն ըստ ներգոյս քերթողական յեղանակս, երիր՝ լեզուաց և հնացեալ պատմութեանց առ ձեռն բացատրութիւն, չորիր՝ ստուգաբանութեան գիւտ, հինգերիր՝ համեմատութեան տեղեկութիւն, վեցերիր՝ զատումն քերդածոց (էջ 1)։

...Եւ բանի մասունք են ութ՝ անուն, բայ, ընդունելութիւն, յօդ, դերանուն, նախադրութիւն, մակբայ, շաղկապ (էջ 12)։

### ԶԵՆՈՆԻ ԻՄԱՍՏԱՍԻՐԻ ՅԱՂԱԳՍ ԲՆՈՒԹԵԱՆ

Քաղաքականացն նախադրի քերականութիւն, և է քերականութեանն երեք տեսակք՝ հմտութիւն, քերթութիւն, քերթողութիւն։ Եւ առք՝ հմտութիւն մասնական իրաց։ Եւ մասունք են վեց՝ վերծանութիւն ներկուռ ըստ առոգանութեան, զբուցատրութիւն ներգոյս ըստ քերթողական յեղանակս, լեզուաց և հնացեալ պատմութեանց առ ձեռն բացատրութիւն, ստուգաբանութեան գիւտ. համեմատութեանց տեղեկութիւն, զատումն քերդուածն (էջ 88ա-բ)։

Եւ են մասունք բանի ութ՝ անուն, բայ, ընդունելութիւն, յօդ, դերանուն, նախադրութիւն, մակբայ, շաղկապ (էջ 88բ)։

---

[1] Diog. Laert. VII, 4. Զենոնի ինչպես այս, այնպես էլ մյուս աշխատությունները մեզ չեն հասել։

[2] Н. Адонц, Дионисий Фракийский и армянские толкователи, СПб, 1915.

[1] Այդպիսի տերմիններից են. ածանց, ածանցական, առոգանութիւն, բայ, բան, բառ, բացատրութիւն, գերակատար, դերանուն, երկբայ-ացեալ, զբուցատրութիւն, ընդունելութիւն, խնդրական,

14. Չնայած այս և բազմաթիվ այլ ընդհանրությունների, որ գոյություն ունեն Զենոնի «Յաղագս բնության» աշխատության թարգմանական բնագրի և 5-րդ դարում կատարված թարգմանական երկերի միջև[1] հրատարակվող բնագիրը չի կարող համարվել այդ շրջանի արտադրանք:

Այս եզրակացությունը հիմնավորվում է հետևյալ փաստերով.

ա. Կան 5-րդ դարի թարգմանական գրականության մեջ ստեղծված ու գործածված 58 բառեր ու տերմիններ. որոնք՝ լայնորեն օգտագործվելով այդ շրջանի թարգմանական երկերում, հետագայում դուրս են եկել գործածությունից:[2]

Այդ բառերից հրատարակվող բնագրում գտնում ենք միայն մեկը՝ «տեսլական»:

բ. Վերոհիշյալ առաջին շրջանի թարգմանություններում հունական ΔΥΣ նախադրությունը, առանց բացառության, թարգմանված է «հակառակ» բառով, որ, հետագայում կրճատվելով, տվել է «հակ» նախադրությունը:[3]

Զենոնի բնագրում բազմիցս հանդիպում ենք «հակ» նախադրությամբ կազմված բառերի («հակադարձաբար» (էջ 90բ), «հակադրութեամբ» (էջ 90բ), «հակադարձին» (էջ 92բ) և այլն), իսկ «հակառակ»՝ ոչ մի անգամ:

գ. Առաջին շրջանի թարգմանական երկերում δια նախադրությունը ոչ մի անգամ չի թարգմանված «տար» նախադրությամբ: Այդ երկերում շարունակ գործ են ածվել «զարմազանութիւն», «զանազան», «ընդդէմ» բառերը, փոխանակ հետագայում գործածվող «տարբերութիւն», «տարբեր», «տարորոշեմ» բառերի: Հրատարակվող բնագրում «տար» նախադրությամբ բառերի գործածությունը սովորական է. դրանցից են՝ «տարածմամբ» (էջ 82բ), «տարբերի» (էջ 93ա), «տարբերութիւն» (էջ 91բ), «տարորոշ» (էջ 92ա) և այլն:

դ. «Շաղ» նախադրությունը, ի բաց առյալ «շաղկապ» բառի, թարգմանական դպրոցի երկրորդ և երրորդ շրջանի թարգմանական երկերում, ամենուրեք, փոխարինված է «շար» նախադրությամբ: Զենոնի երկի թարգմանության մեջ ևս «շաղ» նախադրությամբ կազմված բառի չենք հանդիպում:

ե. «Մակացութիւն» և «ներհակ» տերմինները ստեղծվել են թարգմանական դպրոցի գործունեության երկրորդ շրջանում:[1]

Առաջին շրջանի թարգմանական երկերում այդ բառերի գործածության ոչ մի դեպք չկա: Զենոնի երկի թարգմանության մեջ ոչ միայն գործածվել են այդ բառերը, այլև նրանցով ստեղծված մի շարք բառաբարդություններ («Մակացելի», «ներհակաբար» և այլն):

Թարգմանական-իմաստասիրական դպրոցի ծագման ժամանակի հարցը, հայագիտության ամենակնճռոտ ու վիճելի հարցերից է: Հրապարակի վրա կան մի շարք իրարամերժ և հակասական կարծիքներ: Գ. Տեր-Մկրտչյանի փաստական, ամուր կռվաններով հիմնավորված, կարծիքի համաձայն այդ դպրոցի առաջին շրջանի երկերից մեկի թարգմանությունը կատարված պետք է լինի 480—484 քառամյակում:[2]

Այսպիսով, պետք է եզրակացնել, որ Զենոնի «Յաղագս բնութեան» աշխատության թարգմանությունը կատարվել է առաջին շրջանի թարգմանություններից, ուստի, 480-ական թվականներից հետո:

---

հասարակաբար, հմտութիւն, հնազէտ, համանուն մակբայ, յարաձգական, նախադրեալ—նախադրութիւն, ներգործութիւն, ներգոյ, ներկայ, ներկուռ, շաղկապ, շարադրութիւն, պատառ, պարունակ, պարփակեալ, սեռ-սերք, ստորադաս, ստուգաբանութիւն, վանգ, վերաբերութիւն, վերծանութիւն, տաղ, տառ, քերականութիւն, քերթողական, քերթած, տրամադրութիւն, ցուցական, փաղառուն, փաղառութիւն և այլն:

[1] Հարյուրից ավելի տերմիններ կան հրատարակվող բնագրում, որոնք առաջին անգամ օգտագործվել են Փիլոն Եբրայեցու երկերի և «Պիտոյից գրքի» թարգմանության մեջ:

[2] Հ. Մանանդյան, Հունաբան դպրոցը և նրա զարգացման շրջանները, Վիեննա, 1928, էջ 107—110:

[3] Նույն տեղը, էջ 112—113:

[1] Н. Адонц. Цит. соч. стр. CIXXXIX. Հ. Մանանդյան, Հուն. դպր. էջ 132—137:

[2] Տես Գ. Տ. Մկրտչյան, Տիմոթեոս կուզի հակաճառության թարգ. թվականը («Արարատ» 1908, էջ 564—589) և նույն հեղինակի, Հայ մատենագրության հնագույն թվականները («Շողակաթ», էջ 154—163):

15. Զենոնի «Յաղագս բնութեան» երկի թարգմանությունը չի կարող կատարված լինել նաև վերոհիշյալ թարգմանչական դպրոցի գործունեության երկրորդ շրջանում։[1]

Հօգուտ այս եզրակացության ունենք երկու կարգի փաստեր։ Նախ՝ երկրորդ շրջանում ստեղծված իմաստասիրական տերմինները, համարյա առանց բացառության, նույնությամբ օգտագործված են Զենոնի երկի թարգմանչի կողմից[2]. և երկրորդ՝ Զենոնի թարգմանիչը անփոփոխ ձևով արտագրել է այդ շրջանի թարգմանչական երկերից այն հատվածներն ու նախադասությունները, որոնք առկա են եղել իր կողմից թարգմանվող բնագրում։

Այդպիսի հատվածներ ու նախադասություններ մեծ քանակությամբ գտնում ենք Արիստոտելի «Ստորոգութեանց» թարգմանական բնագրում։

Այդ երկու բնագրից բերենք զուգահեռ շարադասմամբ մի քանի բնորոշ օրինակներ.

«ՍՏՈՐՈԳՈՒԹԻՒՆՔ» ԱՐԻՍՏՈՏԷԼԻ[3]

Իսկ յայնցանէ՝ որ և ոչ ըստ միում շարամանութեան ասացեալ են, իւրաքանչիւր ոք կամ գոյացութիւն նշանակէ, կամ որակ, կամ քանակ, կամ առինչ, կամ ուր, կամ երբ, կամ կալ, կամ ունել, կամ առնել, կամ կրել (էջ 362)։

Եւ քանակին՝ է ինչ որ տարորոշ է, և է ինչ որ շարունակ, և այնք՝ որ գիրն ունին առ միմեանս՝ յիւրեանց մասանց բաղկացեալ, և է որք ոչ յայնցանէ են, որ զգիրն ունին, և է տարորոշեալն, որգոն՝ թիւ, բան, և շարունակն, որպէս՝ գիծ մակերևոյթ, մարմին և առ այսոքիւք ևս ժամանակ և տեղի (էջ 372)։

Յ ա ղ ա գ ս  հ ա կ ա կ ա յ ց

Իսկ յաղագս հակակայց՝ ըստ քանի յեղանակս սովորեցաւ հակակայիլ՝ ճառելի է։ Եւ ասի այլում հակակայիլ քառակերպար կամ իբր առինչք. կամ իբր ներհակք, կամ իբր պակասութիւն և ունակութիւն, կամ իբր ստորասութիւն և բացասութիւն (էջ 396)։

Շարժութեան տեսակք են վեց՝ լինելութիւն, ապականութիւն, աճելութիւն, նուազութիւն, ըստ տեղւոյ փոփոխութիւն, այլայլութիւն (էջ 406)։

ԶԵՆՈՆԻ ԻՄԱՍՏԱՍԻՐԻ
«ՅԱՂԱԳՍ ԲՆՈՒԹԵԱՆ»

Իսկ երկրորդ ստորոգութեանցն ի տասն բաժանի՝ ի սեռս, որ է գոյացութիւն, որակ, քանակ, առինչ, ուր, երբ, կալ, ունել, առնել, կրել (էջ 92ա)։

Եւ քանակին՝ է որ տարորոշ է և որ շարունակ, և այնք որ գիր ունին։

Եւ տարորոշ է բան և թիւ, և շարունակ է գիծ, մակերևութիւն, մակարդակ, տեղի. իսկ ժամանակ՝ բան և թիւ յաւէտ զաս ինչ ունել (էջ 92ա)։

Յ ա ղ ա գ ս  ը ն դ դ ի մ ա կ ա յ ի ց

Ընդդիմակայքն քառակերպար ասին։ Զի է որ առինչունակապէս, և է որ ներհակաբար, և է որ ունակաւորէն և պակասաբար, և է որ ստորասութեամբ և բացասութեամբ (էջ 92բ)։

… Ըստ շարժման բաժանի ի տեսակս վեց, որ է լինելութիւն, ապականութիւն, աճելութիւն, նուազութիւն, այլայլութիւն, ըստ տեղո փոփոխութիւն (էջ 92բ—93ա)։

Մի օրինակ էլ բերենք Արիստոտելի «Յաղագս մեկնութեան» աշխատության յամբղիկյան մեկնության հայերեն բնագրից.

[1] Այս շրջանում կատարված թարգմանություններից են Արիստոտելի աշխատությունները և նրանց յամբղիկյան մեկնությունները։

[2] Այդպիսի տերմիններից են՝ աճելութիւն, անհատ, անմասն, ապացոյց, անելի, բաղկացեալք, բաղկացուցիչ զանազանութիւն, բացասութիւն, բացասական բան, բացերևութիւն, դիւրաշարժելի, ենթակայ-ք, եռանկիւնի, երևակայութիւն, զանազանութիւն, ի զինչէութե, էակ, լինելութիւն, կալ, կալմունք, հակադարձ, հակադրութիւն, համանուն, մակարդակ, մակացելի, նախադասութիւն, նախերգութիւն, ներհակաբար, շարաբանութիւն, շարադրութիւն, շարամանութիւն, շարունակ, որակութիւն, ունակութիւն, ունել, ուր, պատահմունք, ստորասութիւն, ստորոգութիւն, վերլուծութիւն, տարորոշ, տրամատել և այլն։

[3] Կորյունի վարդապետի, Մամբրէի վերծանողի և Դաւթի Անյաղթի մատենագրութիւնք։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ «ՊԵՐԻ ԵՐՄԵՆԵԱՅ» ԳՐՈՑՆ ԱՐԻՍՏՈՏԵԼԻ

*Իմացմունք... նշանակք են իրաց, իսկ ձայնքն՝ իմացմանցն նշանակք, այլ և գրեցեալքն՝ ձայնիցն նշանակք (էջ 490)։*

## ԶԵՆՈՆԻ ԻՄԱՍՏԱՍԻՐԻ «ՅԱՂԱԳՍ ԲՆՈՒԹԵԱՆ»

*...Եւ բառականքն գծածք ձայնից են նշանակք և ձայնք իմացմանց (էջ 86բ)։*

Թարգմանական այս հատվածների կապը միմյանց հետ անկասկած է, սակայն նրանց մեջ կան նաև էական տարբերություններ։ Այսպես, «Ստորոգութեանց» հայկական բնագրի «մարմին» տերմինի դիմաց Զենոնի երկի թարգմանիչը գործ է ածել «մակարդակ» տերմինը։

«Ընկալմանում»-ի դիմաց «Ընդկալմանումն»
«Կացութիւն»-ի դիմաց «ընդկացութիւն»
«Հակակայ»—«ընդդիմակայ»
«իբր ասինչ»—«ասինչունակապէս»
«շարժութիւն»—«շարժումն»
«գրեցեալք»—«գծածք» և այլն։

Այս տարբերությունները պատահական չեն, այլ արդյունք են այդ բնագրերի տարբեր թարգմանական շրջանների արտադրանք լինելուն։

16. Սույն եզրակացությունը հիմնավորվում է հետևյալ նշանակալից փաստերով.

ա. Կան մի խումբ բառեր ու բառաբարդություններ, որ հատուկ են, գրեթե, առանց բացառության, իմաստասիրական ու թարգմանչական դպրոցի երկրորդ շրջանի թարգմանական երկերին։[2]

Հրատարակվող բնագրում բազմաթիվ այդ բառերից գործածվել է միայն մեկը («իմացուած»)։

բ. Թարգմանական այս երկրորդ շրջանում ստեղծվել ու լայնորեն օգտագործվել են «Փար» նախադրությամբ սկսվող բազմաթիվ բառեր («փարաբարձեմ», «փարագրեմ», «փարագրութիւն» և այլն), որոնք հետագայում գործածությունից դուրս են եկել։ Նրանք բացակայում են նաև հրատարակվող բնագրից։

գ. Թարգմանչական առաջին երկու շրջաններում հունական ἐν նախադրությունը հաճախ թարգմանվել է արհեստականորեն ստեղծված «ըն» և «ն» նախդիրներով։[1] Այս հունաբանությունը երկար կյանք չի ունեցել և գործածությունից հանվել է երրորդ շրջանի թարգմանիչների կողմից։ Հրատարակվող բնագրում այդ նախադրությունը թարգմանված է կամ «ընդ» («ընդկալմանումն», «ընդկացութիւն») և կամ «ի» «յ» («յենթակայում», «ի գինչէումն») նախադրություններով։

դ. Պորփյուրի «Ներածութեան» թարգմանությանը հատուկ են «ի ներում գինչէն» և «ի ներում որպիսի ինչէն» հունաբան արտահայտությունները։

Թարգմանչական դպրոցի գործունեության երրորդ շրջանում, Դավիթ Անհաղթին վերագրվող «Վերլուծութիւն ներածութեան Պորփիւրի» աշխատության մեջ, այդ ձևի գործածումը փոքր ինչ պարզեցվել է ու ստացել՝ «ի ներ գինչէումն», «ի ներ որպիսի ինչէումն» ձևերը.

Դավթի «Սահմանք իմաստասիրութեան» երկի մեջ այդ խրթնաբանության պարզեցման ուղղությամբ արվել է երկրորդ քայլը։ Նշված երկում հանդիպում ենք «ի գինչէումն» ձևին։[2] Նույն պարզ ու հայացված ձևին հանդիպում ենք նաև Զենոնի երկի թարգմանական բնագրում։

ե. Ուշադրավ է նաև այն հանգամանքը,

---

[1] Կորիւնի վարդապետի, Մամբրէի վերծանողի և Դաւթի Անյաղթի մատենագրութիւնք։

Հմմ. նաև Արիստոտելի «Ստորոգութեանց» բնագրի 378, 386, 404 էջերը. Զենոնի բնագրի 91—92, էջերի հետ և այլն։

[2] Հ. Մանանդյան, Հունաբան դպրոցը, էջ 127—128։

[1] Որպես օրինակ բերում ենք մի հատված Արիստոտելի «Ստորոգութեանց» մեկնությունից։ «...Եւ ոչ ըն միում յայլոցն ստորոգութեանցն, ոչ ըն գոյացութեան և ոչ ըն քանակի և նոյնպէս նաև նեանն գկէրս, բայց միայն նորակի և նորակութեան» (տես Կորիւնի, Մամբրէի, Դաւթի մատենագրութիւնք, էջ 410)։

[2] Հ. Մանանդյան. Հունաբան դպրոցը, էջ 188, 189։

որ հրատարակվող բնագրում կան մի շարք համարյա նորաստեղծ տերմիններ ու բառեր, որոնք բնավ չեն օգտագործվել նախորդ շրջանների թարգմանություններում, և սակավ բացառությամբ, նույնիսկ մուտք չեն գործել «Հայկազյան լեզվի նոր բառգրքի» մեջ։ Դրանցից են գուղ[1] (էջ 84բ), եռակարար* (էջ 83ա), երկմտանարար (էջ 87բ), Զանազանիչք (էջ 93ա), էագոյն (էջ 97բ), ընդկայութիւն (էջ 92բ), խոնաւումն (էջ 96բ), կարճարառութիւն (էջ 90բ), կացգրութիւն (էջ 87ա), համեստական* (էջ 88ա), հասողական (էջ 96բ), հատադիմակայ (էջ 82ա), հատորանական (էջ 90բ), հատուցական (էջ 90բ), հիմնական (էջ 95բ), միատար (էջ 85ա), մշտակացութիւն* (էջ 82բ և ն), շարանոութիւն (էջ 84բ), շարաօութիւն (էջ 90բ), ունակուրէն (էջ 92բ), պաղպաջմունք* (էջ 83ա), պարփակող (էջ 81ա), պղընձոտ* (էջ 84ա), սեռանամ* (էջ 91ա) և այլն։

Այսպիսով, Զենոնի «Յաղագս բնութեան» աշխատությունը թարգմանված պետք է լինի թարգմանչական դպրոցի երկրորդ շրջանում կատարված թարգմանություններից առնվազն մի քանի տասնամյակ հետո։

17. Երրորդ շրջանի կարևորագույն թարգմանական արդյունքներից է Դավիթ Անհաղթի «Սահմանք իմաստասիրութեան» մեծարժեք աշխատությունը։

Այդ և Զենոնի երկի համատեղ քննությունը ցույց է տալիս, որ թարգմանական այս երկու բնագրերը սերտ աղերսակցական կապերով մերձենում են միմյանց։

Մի քանի օրինակով ցույց տանք այդ մերձեցումների բնույթը։

### ԶԵՆՈՆԻ ԻՄԱՍՏԱՍԻՐԻ «ՅԱՂԱԳՍ ԲՆՈՒԹԵԱՆ»

...Քան զի բնականն ի սեռէ և ի բաղկացուցիչ զանազանութեանց։

... Իսկ դարձեալ է բնական, որ սահմանի ի սեռէ և ի բաղկացուցիչ զանազանութեանց (էջ 96ա)։

Ուստի՞ յայտ է սահման, յադարակոյնոցն ցուցմանէ, ...Յորմէ՞ առնու՝ յենթակայէ և ի կատարմանէ (էջ 89բ)։

Հում ենթակա...հում կատարումն...հեռի ենթակա...հեռի կատարումն (էջ 89բ)։

Իսկ (սահման) տեսականին՝ զգայութիւն, երևակայութիւն, կարծիք, տրամախոհութիւն, միտք (էջ 87ա)։

Քանզի են սահմանք իմաստասիրութեան. գիտութիւն էակաց, գիտութիւն աստուածայնոց և մարդկայնոց, խոկումն մահու, նմանութիւն աստուծոյ, արհեստ արհեստից և (մակացութիւն) մակացութեանց...սիրելութիւն իմաստութեան, որք են վեց (էջ 89բ)։

### ԴԱՒԹԻ ԱՆՅԱՂԹԻ «ՍԱՀՄԱՆՔ ԻՄԱՍՏԱՍԻՐՈՒԹԵԱՆ»[1]

Ամենայն սահման բնաւորեալ ի սեռէ և ի բաղկացուցիչ զանազանութեանց լինել (էջ 136)։

Ուստի՞ առի սահման. և պարտ է գիտել՝ եթէ սահման առի ի փոխաբերութենէ գիւղից և ագարակայնին սահմանաց։

...Ուստի՞ առնու սահման, և պարտ է գիտել՝ թէ սահմանք կամ յենթակայէ առնուն և կամ ի կատարմանէ (142—143)։

Հում ենթակայ և հեռի ենթակայ, և հում կատարումն և հեռի կատարումն (էջ 151—152)։

Քանզի պարտ է գիտել զհինգ գիտական զօրութիւնս. զգայութիւն, զերևակայութիւն, զկարծիս, զտրամախոհութիւն, զմիտս (էջ 185)։

Իմաստասիրութիւն է՝ գիտութիւն էակաց...գիտութիւն աստուածայնոց և մարդկայնոց իրողութեանց... խոկումն մահու...նմանութիւն աստուծոյ ըստ կարողութեան մարդկան...արհեստ արհեստից և մակացութիւն մակացութեանց... սիրելութիւն իմաստութեան (էջ 154)։

[1] Աստղանիշերով ցույց ենք տալիս այն բառերը, որոնք մտել են «Հայկ. բառգիրք», Զենոնի «Յղ. բնութեան» աշխատության համառոտ խմբագրության միջոցով։

[1] Դաւթի Անյաղթի մատենագրութիւնք։

Յաղագս գործնականին. որ է տնաւրինական, բարոյական, քաղաքական (էջ 87բ)։

Իսկ սահմանական բաժանի ի տեսակս չորս տրամաբանութեամբ, այսպէս, թէ զի՞նչ է, և ուստի է, և որպիսի՞ են, և վասն է՞ր է (էջ 89բ)։

Բացի այս օրինակներից՝ համեմատվող բնագրերում կան նաև այլ ընդհանրություններ։ Կան մի խումբ կարևորագույն փիլիսոփայական տերմիններ, որոնց մի մասը գործածված է միայն, իսկ մյուս մասը՝ առաջին անգամ, այդ բնագրերում։

Այդպիսի տերմիններից են՝ անգոյ, անմասն, աննիւթ, առանձնական, ատենական, բաժանումն, բաղխոհական, բժշկականութիւն, բնաւորեցաւ, բնութիւն, գիտութիւն, դատաւորութիւն, զօրութիւնք, ընդունակ, ընտրողութիւն, թուականութիւն, իմանալի, իմաստասիրութիւն, խառնուածք, կատարեալք, կատարելագոյն, հատումն, նիւթականք, տնաւրինական, քաղաքական և այլն։

Այս ընդհանրությունների հիման վրա դժվար չէ եզրակացնել, որ Զենոնի աշխատության թարգմանությունը նույնպես պետք է կատարված լինի թարգմանչական դպրոցի գործունեության երրորդ շրջանում։

18. Դավթի «Սահմանք իմաստասիրութեան» աշխատության հայկական բնագրում կա մի ուշագրավ հատված. «Հոգիք մարդկան երկուս զօրութիւնս բնաւորեցան ունել, տեսական և կենդանական։ ...Կենդանականն ունի զայսոսիկ՝ կամաւորութիւն, ընտրողութիւն, յօժարութիւն, բարկութիւն, ցանկութիւն» (էջ 191)։

Հունարեն բնագրի համապատասխան մասում կարդում ենք. «Ζωτικαὶ δὲ αὗται βούλησις καὶ προαίρεσις, θυμὸς καὶ ἐπιθυμία»։[1]

Ինչպես տեսնում ենք՝ հունարեն բնագրում հոգու կենդանական զորությունները չորսն են, «յօժարութիւն»-ը չի նշված այնտեղ։

Հայ թարգմանիչը իրեն կարող էր թույլ տալ՝ բնագրից շեղվելով, ավելացնել այդ բառը, եթե ձեռքի տակ ունենար վերոհիշյալ հավելումով մի հեղինակավոր աղբյուր։

Գործնականն բաժանի ի բարոյականն, ի տնօրինականն, ի քաղաքականն (էջ 209)։

...Ասեն թէ պարտ է յամենայն իրողութիւնս չորս զայսոսիկ խնդրել գլխաւորս՝ եթէ է՞, և զինչ է՞, և որպիսի ինչ է՞, և վասն էր է՞ (էջ 121)։

Այդպիսի աղբյուր իրոք գոյություն ուներ հանձինս Զենոնի հրատարակվող աշխատության, որտեղ կա հետևյալ հատվածը.

«Բանզի սահմանք գործնականին են՝ կամք, յաւժարութիւն, ընտրողութիւն, բարկութիւն, ցանկութիւն» (էջ 87ա, տող 13—15)։

Վերհիշենք նաև որ ἐν τῷ τί ἐστι արտահայտությունը միայն Զենոնի և Դավթի քննարկվող երկու բնագրերում է թարգմանված հայերենին հարազատ ու պարզ «ի զի՞նչէութիւն» արտահայտությամբ. (Նախորդ շրջաններում այն թարգմանել են՝ «ի նեկում զի՞նչէն» կամ «ի նեկ զի՞նչէութիւն» ձևով)։

Բերված փաստերը բավարար են՝ ցույց տալու համար, որ կամ վերոհիշյալ երկու բնագրերը թարգմանվել են նույն գործչի կողմից և կամ նրանց թարգմանիչները եղել են ժամանակակիցներ ու թարգմանչական նույն դպրոցի համամիտ ներկայացուցիչներ։

Այս եզրակացությունը, ցավոք, չի օգնում Զենոնի աշխատության թարգմանության ժամանակի ճշգրիտ որոշմանը, որովհետև թարգմանչական դպրոցի երրորդ շրջանի ժամանակագրական սահմանները դեռևս մշուշապատ են ու անորոշ։ Այնուամենայնիվ թարգմանական այդ դպրոցի գործունեությունն ավարտված պետք է լինի Անանիա Շիրակացուց տասնամյակներ առաջ, մերձավորապես 7-րդ դարի սկզբում։

19. Զենոնի աշխատության թարգմանիչը հայ եկեղեցու հետևորդներից է. Նա իր թարգմանությանը կցած վերջաբանում (տես. էջ 97բ, տող 18—36), որոշակի կերպով շարադրում է իր հավատո հանգանակը Նիկիայի հավատո հանգանակի նմանողությամբ։[1]

Վեցերորդ դարի ողջ ընթացքում հայ

[1] Davidis Prolegomena et in Porphyrii Ysagogen commentarium, Berlini, 1904 թ., էջ 79, 8—9։

[1] Հմմ. «Կնիք հաւատոյ», Էջմիածին, 1914, էջ 18 («Սահմանք հաւատոյ Ս. ՅԺԸ»-ից), էջ 51 («Եզնկայ Կողբացւոյ թարգմանչի ի Հայս»)։

եկեղեցին ստիպված էր մի շարք ճակատներով պայքարի ելնել իր ինքնության պաշտպանության և սոցիալ-տնտեսական դիրքերի ամրապնդման համար։

Դեռևս Եզնիկ Կողբացին գրել էր. «Եկեղեցւոյ աստուծոյ զարդ այն է, զարտաքինսն իրօք ճշմարտութեան առանց գրոց յանդիմանել, և զկարծեցեալսն ներքինս և ոչ ճշմարտեալս՝ գրովք սրբովք յանդիմանել»։[1]

«Առանց գրոց» այսինքն առանց Աստվածաշնչի «հանդիմանվողները» զինված էին արտաքին գիտություններով, որոնց քաղաքական ու տնտեսական պահանջները հիմնավորվում էին հին հունական փիլիսոփաների տեսություններով և այլն։

Ահա նրանց դեմ պայքար մղելու նպատակով է, որ հայ եկեղեցին դիմում է հին հունական փիլիսոփայության—Արիստոտելի, Պղատոնի, Զենոնի և այլ իմաստասերների աշխատությունների թարգմանությանը։

20. Զենոնի «Յաղագս բնութեան» աշխատությունը հայ իմաստասիրական մտքի վրա, որքան մեզ հայտնի է, խորը ազդեցություն չի թողել։

Հետագայում, 13—14-րդ դարերում այդ աշխատությունը նորից գրավել է գիտական շրջանների ուշադրությունը։ Մոռացված այդ բնագիրը նորից արտագրվել է մի քանի անգամ (1280, 1314, 1389 թվականներին), դարձել քննության առարկա և, ըստ երևույթին, ծառայել է նաև ուսուցողական նպատակների։

Գլաձորյան համալսարանի շրջանավարտներից մեկը իր ավարտական ատենախոսության մեջ, որ գրված է «Գնացք գետոց ուրախ առնեն զքաղաքն Աստուծոյ» (Սաղմոս ԽԵ, 5) բնաբանով, մեջ է բերել մի ընդարձակ հատված Զենոնի աշխատության «Յաղագս գրից» ենթագլխից (էջ 1ա, տող 16—1բ, տող 17)։[2]

21. Հրատարակվող համահավաք բնագիրը կազմել ենք առկա բոլոր չորս ձեռագրերի ավագ ընթերցվածքների մանրակրկիտ ուսումնասիրությամբ։

Այդ ձեռագրերն են.

A—Մատենադարան № 5254
B— » № 627
C— » № 3487
D— » № 1823

Տողատակերում նշել ենք նույնիսկ աննշան տարբերությունները, չհաշված մի քանի ակնհայտ գրչական սխալներ։ Կասկածելի դեպքերում միշտ առաջնություն ենք տվել A (ընդարձակ խմբագրության) ձեռագրի ընթերցվածքներին, նկատի ունենալով նրա հնությունը, ամբողջականությունը և գրչի վարպետությունը։

Պետք է նշենք սակայն, որ չնայած մեր ջանքերին, մեզ չհաջողվեց բնագիրը ներկայացնել անթերի վիճակով։ Հատկապես բնագրի այն մասերում, որոնք պահվել են միայն ընդարձակ խմբագրության մեջ, մնացին մի քանի չհասկացված ու մեկնության կարոտ հատվածներ։

Բարեբախտաբար այդպիսի հատվածների թիվը շատ չէ.

22. Ստորև տալիս ենք A (5254) ձեռագրի մանրամասն նկարագիրը։

Թերթ՝ 256+1, մեծություն՝ 17×12×5, կազմ՝ դրոշմազարդ կաշեպատ տախտակ, վիճակ՝ փտված (սկզբից, միջից և վերջից ընկած են թերթեր, պրակներ), գրություն՝ միասյուն, տողեր՝ 24—26, բառանջատում՝ չունի, գիր՝ բոլորագիր, գրիչ և ստացող՝ Գէորգ, ժամանակ՝ ՉԻԹ—1280 թ. տեղը՝ Դեղձուտի վանք, ի Մահկանաբերդ, հիշատակարաններ՝ 54բ, 47բ, 6բ, 17բ, 44բ, 86ա, 91բ, 125ա, 130բ, 135ա, 180ա, 202բ, 205բ, 209բ, 222բ, 227ա, 132ա էջերում՝

Բ ո վ ա ն դ ա կ ու թ յ ու ն

Սկզբից թերի է, պահպանվել են 12 պատռված թերթերի լուսանցքները։

ա. 1ա—6բ. Սրբոյն Ներսէսի Լամբրոնացւոյ Տարսոնի եպիսկոպոսի յառակաց մեկնութենէ։ Ոչ է սա կաթողիկոսն Հայոց, այլ ազգական նորին։ Եւ էր թւին Հայոց ՈԽԶ (1197), և զայս վասն այն գրեցաք, զի հակառակ էին ոմանք վասն անուանցն.

«Հանդերձ ամ. մխալ ի քննուէ. գրոց առակաց Սողոմոնի...

բ. 6բ—17բ. Մեկնութիւն յեսայեայ մարգարէի «Անեբեւոյթ են որդոց մարգարէից բանք...

գ. 17բ—20բ. Նախերգան երկոտասան

---

[1] Եզնիկայ վարդապետի Կողբացւոյ Եղծ աղանդոց, Թիֆլիս, 1914, էջ 78։

[2] Մատենադարան, ձեռագիր № 631, էջ 89բ—90ա։

մարգարէից «Յար և մերձաւոր վկայ են գրոց բնաւորական բնութիւն մարդկան...

դ. 20բ—31ա. Ներսիսի Հա(յ)ոց վերադիտողի, ի խնդրոյ Նորին եղբաւրն Գրիգորիսի առաջին վերադիտողի (մեկնութիւն երկոտասան մարգարէից)։ «Սիրոյ զաւրութիւն զերագանց է քան զընութիւն...

ե. 31բ—44բ. Պատճառ ուսուարանին Յովհաննու [հաւաքածաբար շարահարված են Սա(եփանոսի), Բ (ա)րս(եղի), Եփր(եմի), Եւսեբ(իոսի) և Նանայի աւուլթները] «Որք արտաքին հանգիսից լինին անսուղք...

զ. 45ա—46բ. (Պատճառ ուսուարանին Ղուկասու) «Ղուկասու ուսուարանս երրորդ է բստ կարգի...

է. 46բ—54բ. Երանելոյն Վարդանայ հայոց լուսաւոր վարդապետի յաղագս խորանաց աւետարանին «Մասնանք աստուածազիծք և հոգերուս վարդապետութիւնք...

ը. 54բ—55բ. Վասն Յակոբայ՝ հաւր Յովսիփու (և) վասն Աննայի՝ մաւր Աստուածածնին

թ. 56ա—65բ. (Բագուածոյ մեկնութիւն տեսլեանն Եզեկիելի մարգարէի). հաւաքածաբար շարահարված են Եփրեմի, Ստեփանոսի, Յովհաննու, Գր. Նիւսացւոյ, Եւագրի, Սարկաւագի և այլոց աւուլթներք։ «... (սկ. թերի) և յամէն երեւեցուցի...

ժ. 65բ—71բ. Վասն Թագաւորացն Իսրայէլի, գիտելի է ի Սողոմոնէ և այսր, թէ որպէս են զկնի միմեանց... «Աստուածային իրագործութեամբն հրաշալեաց Թագաւորութիւնն Դաւթի...

ժա. 72ա—76ա. (Գիրք պատճառաց Դաւթի Բարսեղեցւոյ)։ Սկիզբը թերի է, պահպանվել են Գր. Նյուսացու հինգ գրքերի «Պատճառներ»։

ժբ. 76ա—89ա. Դաւթի վարդապետի պատճառ պաշտոն գրոցն Բարսղի. (արված են ա ԼԹ ճառերի «պատճառները»)։

ժգ. 89ա—91բ. Սկիզբն և պատճառ Հարցողաց գրոցն Բարսղի «Տեսչութ թէ ուստի է սկիզբն մեռաւոր կրաւնաւորութեան...

ժդ. 91բ—93ա. Պատճառ և սկիզբն վերաւորեա գրոց սրբոյն Բարսղի «Տեսչութ վասն վարուց սրանչելի Բարսղի...

ժե. 93բ—119ա. Սկիզբն և պատճառ գրոցն (Գրիգորի) Աստուածաբանի (17 ճառերի «Պատճառներ»)։

ժզ. 119ա—125ա. Սկիզբն և պատճառ գրոց, զոր արարեալ է բազմախորհուրդ ամենիմաստ սրանչելին Փիլոն (7 աշխատությունների «պատճառներ»)։

ժէ. 125ա Այսեն անուանք խեցեմորթաց (11 անուն)։

ժը. 125բ—131բ. (Աղիւսակք թուոց անկիւնաւորաց) (Վերջից թերի, 127 թերթից հետո կան ընկած թերթեր, 131 թերթը ներքևից պատռված է)։

ժթ. 133ա—135ա. Իրնութեան գրոց «Որպէս ոչ մարդոյ, կամ մարդ զոր ոչ է արժան զործել...

ի. 135բ—136ա. Մայրաքաղ ի Յւացորզացն մեկնութիւն (է). «Որ առէ դՊաւթէ ի Թագաւորութեանն...

իա. 136ա—145բ. Սկիզբն և պատճառ Եւագրին... (15 ճառերի «պատճառներ»)։

իբ. 145բ—162բ. Եղիայի ասացեալ՝ առոբոց վարդապետի, պատճառ վերլուծութեանն ի խաւսս սրբոյն Գրիգորի Աստուածաբանի (14 ճառերի «պատճառներ»)։ Ձեռագրից ընկել է 3 տետր՝ Զ. Գ. Ջ. համարակալությամբ։

իգ. 163ա—180բ. (Նոննոսի մեկնութիւնք Գրիգորի Աստուածաբանի հինգ ճառիցն) Սկսվում է «մեկնութիւն այնոցիկ, որ և յառաջնումն արձանականին եղեն...» գլխի Լ. (Յաղագս Անտիոքենի) հոդվածով։ Ավարտվում է «Նմանապես պատմութիւն այնոցիկ, որ յերկրորդում արձանականին» գլխի Լ. հոդվածով։ Ձեռագրից ընկել է 2 տետր՝ Վ. և Տ. համարակալությամբ։

իդ. 181ա—181բ. Յաղագս ալբէնս որցութեան (*) «Եւ զաւրէնս որցութեան ըմանք եդեն ի կարգի կրթման...

իե. 181բ. Այլուստ բան (մի բանի տող)։

իզ. 181բ—182բ. Այլ բան ուսանէք (Ծնդարանութիւն և ամ նահապետաց հրէից) «Սիմէոն եղբայր Յոփաթանու...

իէ. 182բ—190ա. Սակաւ մի բան ի բարուախաւսէն (30 հոդված) Տարբեր է բարոյախոսի Ն. Մառի կատարած հրատարակություններից, և արժանի է հատուկ ուսումնասիրության։

իը. 190ա—202բ. Խոսք Փիլոնի (ժամանակագրության Անանիայ Շիրակունւոյ)։ «Նախաստեղծն Ադամ կեցեալ ամս...

իթ. 202բ—204ա. Յաղագս աստուածութեան իմաստասիրութիւն «Հերմես նշաննաւոր փիլիսոփա առէ Գ. զաւրութիւնք երկնից...

լ. 204ա—204բ. Սրբոյն Եղիշէի (Համառաւտ ի մեկնութենէ Արարածոց) «Հաւատութիւն Աստուծոյ յետ յանցանացն...

լա. 205ա—205բ. (Անուանք մարգարէից) Սկզբից թերի.

լբ. 205բ—206ա. Այսեն անուանք Թարգմանչացն, որք առ Պաղոմէիւ «ի ցեղէն Ռուբինի՝ Յովսէպոս...

լգ. 206ա. Յաղագս երկոտասանից, թէ յորոց ազգաց (էին) «Պետրոս և Անդրէաս ի ցեղէն Նեփթաղեմի... Յովհաննէս ի ցեղէն Ղեւեայ»

լդ. 206ա—207ա. Յաղագս երկոտասանից (Դորոթէոսի եպիսկոպոսի) «Վասմականն Դորոթէոս...

լե. 207ա—209բ. Յաղագս ՀԲ աշակերտացըն տեառն Դորոթէոսի եպիսկոպոսի

և մարտիրոսի գրեալ «Առաջին Յակոբոս եղբայր տեառն...

լգ. 210 A ա. Ծարագրութիւն գրոց բոա եբրաեցոց, զոր ընկալաւ եկեղեցի, այս են «Արարածք, Ելք, Ղեւտացիք...

լէ. 210 A բ. (Այրուբենք եբրայեցւոց, Ասորւոց և Տաճկաց), վերջին թերթ. «ալփ, բէ, գիմալ...

լը. 210 B ա—212բ. (Գրիգորի Նիւսացեմացւոյ սահմանք զանազանք արտաքոչեալք բառ որոց և ծայրագոյն վարդապետաց յաղագս տարբերական և այլ և այլ անուանց). սկզբից թերթ մեկ սերբակի չափով. վերնագիրը վերականգնում ենք համաձայն № 464 ձեռագրի էջ 189-ի։

լթ. 112բ—217բ. Արիստոտելի («Պերի երմէնեաս գրոց» Յաղագս բանի» գլխի, մի պրակի մեկնութիւն). միջից թերթ 2 թերթ. «Արդ գոյ գէակն...

խ. 217բ—220բ. Ճարտասան, յաղագս բնութեան (տետրը սխալ է կազմված 218 և 219 թերթերը պատկանում են հաջորդ հոդվածին)։

խա. 220բ.—222բ. Սահմանք փիլիսոփայական (տետրը սխալ է կազմված, պետք է կարդալ հետևյալ դասավորությամբ՝ 220բ—221բ. 218ա—219բ. 222ա—222բ.). «Սահմանք գնելով փիլիսոփայական բանի...

խբ. 222բ. (Յաղագս առոգանութեանց) «Առոգանութիւնք են ժ. շեշտ, բութ...

խգ. 222բ. Արիստոտելի ժ. ստորոգութիւնք, վերջից թերթ. «Գոյացութիւն, որակ, քանակ...

խդ. 223ա—223բ. (Յաղագս շարժմանց) սկզբից թերթ. «...լինին և են որ յարեւելից...

խե. 223բ—227ա. (Մեկնութիւն ստորոգութեանցն Արիստոտելի, Թերևս Համամայ Արևելցւոյ), 224 թերթը մասն է մի այլ հոդվածի. «Առաջին գործք հրամանին Աստուծոյ...

խզ. 227բ. (Իմաստասիրական ծառ)

խէ. 228ա—230բ. Գոյն և գիւտ և զաւրութիւն ականցն, Եպիփանու (Կիպրացւոյ). Տարբեր է տպագրից. «Սարդիոն չիկացոյն, արիւնատեսիլ...

խը. 231ա—237ա (Ի բժշկարանէն Յաղագս բնութեան մարդոյ) սկզբից թերթ, վերնագիրը լրացնում ենք համաձայն № 464 ձեռագրի. «...Պտուղ առողջ, եւ տաւելը...

խթ. 237ա—237բ. Յաղագս շարժման «Շարժումն լինի ի հոգւոյ բանութենէ...

ծ. 238բ—256ա. Այլ բան (Զենոնի իմաստասիրի յաղագս բնութեան). «. Եւ դարձեալ զանազանի նախադասութեամբ...

ծա. 256ա—256բ. (Յաղագս ստորոգութեանց) «Այս են մասունք աշխարհի ..

ծբ. 256բ. Դութի փիլիսոփայի (Հակոց գիրք), վերջից թերթ, ընկել են մի քանի թերթեր, «Ի քանիս բաժանի էակն և յորս...

Կարևոր հիշատակարանները

ա. էջ 54բ. «Որք ուգաիք ի սմանէ զհոգևոր եղբարքս իմ զՎարհամ և զՍտեփաննոս յաղութս յիշեցէք. քանզի մինչ գայս փայլ գաւրինակն աքայ չնորհեցին. և ոչ միայն այս, այլ և պանդխտութեանս իմոյ մխիթարիչ էին՝ հոգևոր և մարմնաւոր, քանզի ի միում խցի պանդխտանէաք, որ և Քրիստոս հատուցէ զվարձս: Եւ յայսմ ամի գնալով սոցա յերկիրն իւրեանց յԱյրարատեան գաւառն, տրամութիւն հասուցին ինձ, զի միայն մնացի, այլ աջողեսցէ սոցա խնամողն ամենայնի, ամենայն ուրէք ուր և երթայցեն: Եւ զիս զԳէորգ որդի Գաբուսա Թոռին Հզարայ, յերկրէն Խաչինոյ, ի մեծահռչակ քաղաքանէն Գանձասարայ, որ մակացուէի յերկիրս Մանկանաբերդոյ ի վանս Դեղձուտի՝ առ ոտս Առաքել վարդապետի, յաղութս յիշեսջիք. ի թվիս ՉԻԹ (1280), աւգոստոսի ժ. (10) գրեցաւ»

բ. էջ 47բ. «զԳէորգ ընթերցող քահանայ՝ զսէր գրոցս՝ յիշեցէք ի Քրիստոս, ընդ՝ նմին և զմաժանս՝ զԱւետիսս».

գ. էջ 91 բ. «Ով և մեծ աւագ, զարմանք բանս ու ահեղ, զի յայս զաւնոցս եմ ես ազեղ, ինչ զայն չամաչեմ ի գրոցս այդեղ, զիարդ գնեմ ես զաւանենց, և չմտանեմ ես բազմամեղ, ինչ աւգուտ է ինձ տալ երբ անկցուրդ եմ ես գործել, այսու երեկիմ ես թէ խարիմ, վա՜յ է զիս եղբայր, զինչ անինք»

դ. էջ 132ա. «Թվ. ՌՃԼԹ, (1690), յամսեանն յունվարին մէկն, տարեմտին, ես Թոխաթեցի Դաւիթ յաւագ սարկաւագս յեղի տեսիս այս ծաղկաւէտ ծաղկեալ վարդապետաց և իմաստասիրաց բաղում չահ, ընթերցողաց օգուտ՝ ծախապատ կողքին Կոստցայ, զուռն ասեր Աստուածածնին և Կարապետայ յեղի տեսիս այս, եղբարք ընթերցէք, ես տաւել վարդապետաց օգուտ աւոյ եղեցի, յիշատակ անջնջելի յանձին իմոյ...

# ДРЕВНЕАРМЯНСКИЙ ПЕРЕВОД ТРАКТАТА „О ПРИРОДЕ“ ФИЛОСОФА ЗЕНОНА

(Резюме)

Издаваемый труд философа Зенона дошел до нас в двух редакциях; полная редакция сохранилась только в сборнике Матенадарана (№ 5254), переписанном калиграфом Георгом в 1280 году.

Труд Зенона состоит из 5 глав (о полезных родах, о практике, о разуме, о теории, о познании).

По дошедшим до нас редакциям восстанавливается последовательность глав труда Зенона, которая нарочито была искажена армянским редактором.

Текст дает возможность также восстановить несохранившееся заглавие труда—„О природе“.

Автором труда, по всей вероятности, является основоположник стоической школы философ Зенон, однако, для окончательного выяснения этого вопроса необходимы дополнительные данные.

Армянский переводчик труда Зенона был знаком с двумя первыми периодами переводческой деятельности эллинофильской школы (Грамматика Дионисия Фракийского, Категории Аристотеля и др.). Терминология и язык роднят его с трудом „Определение философии“ Давида Непобедимого. По этим данным устанавливается вероятное время перевода—VII век.

Влияние издаваемого текста на армянскую средневековую философию было не велико. В XIII—XIV в. в. труд этот вновь привлекает внимание ученых кругов, переписывается в 1280, 1314, 1389 годах и, повидимому, используется для преподавательских целей в Гладзорском университете.

Издание текста подготовлено тщательным сличением дошедших до нас четырех рукописей.

# ԶԵՆՈՆԻ ԻՄԱՍՏԱՍԻՐԻ ՅԱՂԱԳՍ ԲՆՈՒԹԵԱՆ

Ձեռագրերի համեմատությամբ պատրաստեց հրատարակության Լ. ԽԱՉԻԿՅԱՆ

## *I. ՅԱՂԱԳՍ ՊԻՏԱՆԱՑՈՒ ՍԵՌԻՑ*

*Արդ, են սեռք պիտանացուք վեց՝ գիրք, կարգք, շրջանք, չափք, զուգութիւնք, ազգմունք:*

### [Յաղագս գրից]

*Արդ, գիրք ի տեսակս վեց բաժանին: Առաջին է ունայնին անգոյութիւն պարունակեալ յանբաւէն, և ի մէջս իւր կառուցմամբ բարձեալ ունի զբոլորն ի նոյն տրամագծին և փոփոխեալ շարժմամբ: Երկրորդ է, որ յանկրական հրոյ և լուսոյ երկին բաղկացեալ՝ պարփակեալ յունայնէ, յայնցանէ է և նիւթ և բնութիւն անմարմին կենդանեաց: Երրորդ՝ հաստատութիւն ջրայարկին պարունակեալ ընդ վերնովն վասն յաւէտ կեզղութեանն արգելման, և դարձեալ՝ պարփակող արտաքսութեան և համան զգալեացս: Չորրորդ՝ գիրք ծովուն, որ յաւզոյն հաստատեալ կայ առանց ծարման եզերբքն և փակեալ ընդ հաստատնովն, և բաղկացուցիչ և բնակարան զեռնոց և կիտաց մեծամեծաց, և շուրջ զերկրաւ՝ տալ զուգութիւն ախտամետութեանց և առողջութիւն մարմնական կենդանեացս, ի ձեռն հողմոյն բերման ի զգայութիւնս իւրաքանչիւր: Հինգերորդ է երկրիս շարադրութիւն, որ թանձրութեամբ՝ լերամբք և բլրաւք, դաշտաւք և ձորովք, հաստատեալ ի կողմանց, ի խոր և ի հոծ աւդոց, և յոլորտս ջրովք ծովուն փակեալ կայ չորեքանկիւնի ձեւով: Եւ ընդ սորա երկրիս զեաք հրաւեցք աւդոյ և ջրոյ խաղացեալ լինին ընդ ամենայն երակս, ուստի աղբերք և հողմք վերացնացեալ շարժմամբք. և այսպէս ծովուց և գետոց ընդունակք, և*

---

[1—3] A վերնագրի փոխարեն՝ «Այլ բան», B չիք Զենոնի իմաստասիրի, ունի յաղագս [գիտութեան], C չիք վերնագիրը, D Զենոնի Իմաստասիրի Յաղագս պիտանացու սեռից [4] C պիտանացու սեռք, D Արդ պիտացու [5] B Կարք [8] D և տեսակս, AB բաժանի [9] B ունայն գիտութիւն, C ունայնին անբաւութիւն (ուղղված՝ անգոյութիւն), D անգիտութիւն [11] C չիք ունի [12] A տրամագծի, B տրամագծին, A անփոփոխ և շարժմամբ ‖ («փոխանակ» բառի տեղ, ամենուրեք գնում ենք ‖ նշանը) և փոփոխեալ շարժմամբ, B շարժամբ, D շարժամբ [13] չիք է, D անկրական [14] BCD չիք պարփակեալ [15] BCD չիք յայնցանէ է [16] B մարմին ‖ անմարմին [18—19] B յաւետակեզղութեան, C չիք արգելման [20] B արտաքսատղութեան:

[1] C երրորդ ‖ չորրորդ, D ծովու, B չիք որ [2] D կալ ‖ կայ [3—4] BD ընդ հաստատնովն [4] BD չիք և [բաղկացուցիչ] [5] B զեռնոցն, D զերնոց, A կէտիցն, B կիտացն A մեծամեծացն, B մեծամեծ [6] D զերկրաւս, C զուր ‖ զուգութիւն, B ախտամետութեանս, [7] BCD մարմնոյ ‖ մարմնական [8] A կենդանեաց [9] B իւր իւրաքանչիւր [10] CD չիք է, B երկրի, AD երկիրս, BC շարադրութիւնս, D շարոգրութիւնս [11] B լերամբ, բլերօք: [12] BD ձորօք, A հաստատեալք [13] B հոլորտս, D յոլորդս [14] A Դ. իւր անկիւնի [15] B սերտս, D երկիրս [15—16] BCD հրաշից, օդից [17] ABC աղբիւրք: [18] B հողմունք, A ի վերացնացեալք, B շարժմունք: [19] C. եւն ‖ և այսպէս, AB. ընդունակ:

որ ի ջուրս և որ ի ցամաքի են ծննդականք՝ ամենեցուն զոյացուցիչ և պատճառող կենաց զօր Վեցերորդ է միջոցք աշխարհիս, որ ի յաւղոց բնապատեալ ուսուցմամբ, ի ներքս արգելման ի փորուած մեկնութեան երից հաստադիմակայիցն, զաւդ և կապուածս աշխարհիս բաղկանալ, որ է պատճառ կենդանութեան և է բնակութիւն:

Եւ սահմանք տանեղատանցն ի մէջս իւր, ընդ հաստատանովն, զի ի վարմանէ աւղոցն ըստ իւրաքանչիւր տանցն անսխալ շրջագայլին տանեղքն, յորս կարգեալ են ըստ ժամանակի և ըստ տեղեացն սահմանի:

## Յաղագս կարգաց

Կարգ ըստ երից բաժանի. ըստ առաքինութեան, ըստ աւրինի և ըստ բնականութեան:

Զի ըստ առաքինութեան և ըստ աւրինի են հրեշտակք և մարդիկ՝ զուգեալք ի տնաւրէնութեան իմացս: Իսկ ըստ բնականութեան՝ ամենեքեան, որ յաշխարհիս բնաւորեցան զալ յիւրաքանչիւր բնական սահմանս:

Արդ՝ որք ըստ առաքինութեան և ըստ աւրինի ոչ վարեալք՝ անկարգութիւնք և կործանմունք հանդիպին և հետևին նոցին կենացն: Եւ որ զբնականն արտաքս ելեալ փախի՝ խեղակէս քակտումն և եղծումն լինի բնութեանն:

Իսկ տանեղատունքն կարգեալ են ի պարունակս աւղոց և ի շաւեղս աւղավարութեանն, ոչ զմիմեամբք եկանեն, և ոչ փոխին յիւրաքանչիւրոցն:

## Յաղագս շրջանաց

Շրջանք բոլորին ըստ երից յեղմանց բաղկանայ, որ է՝ ապաւորութիւն, բացերևութիւն, մշտակացութիւն, զի ապաւորեալ աշխարհս յանբաւին և բացերևեալ ի ձեռն ունայնին՝ ի գոյն և ի ձև և ի տեսակս սեռի: Եւ ի նոյն դարձեալ մշտակային ըստ ապաւորութեան, ասամ բացերևեցաւն անշարժելի բնութեամբ. քանզի ի նոյն անդրէն զկատարումն առնու բոլորն համանգամայն զանազանութեամբ:

Իսկ երկնիցն շրջանս իմանալի է զպարունակս աւղոցն առել, և ոչ զհաստատութիւն ջրայարկին, որ ընտրողականն է, և ոչ զերրորդ երկինս, այլ որ ընդ հաստատանովս են աւղք պարունակեալ, ըստ եւթն բաժանման ընդ միմեամբք կարգեալ, բոլորութեամբ շուրջ զոլով զանդնդովք հարթ ըստ չորեցունց կողմանց աշխարհիս, յորս տանեղատունքն բաժանեալ և յամենայն վայրս աւղոցն ցրուեալ տարածմամբ ի յեփելս կիսագունդս անդադար շրջագայութեամբ, զիմաւք յարևելից յարեմուտս, որք ընդ նոյն շաւեղս վարին:

---

1—2 C ծնունդք ‖ ծննդականք 2 AB ամենեցուն, C գոյացուցիչ 2—3 B պատճառ ‖ պատճառող 3 A վեց գ. է, C վեցերորդ, B վեցերորդ են, 4 CD չիք ի 5 C ի ներքս 5—6 A ի փորուած 6—7 B հաստագիմակայից, D հաստադիմադիմակայիցն 7 ABD կապուած 7—8 B բաղկանա 9 D բնակութիւնն 10 A տանեղացն, C տանեղատնեացն 11 D ընդ հաստատութիւն 12 ACD աւղոյն, C ընդ երկաքանչիւր 13 D շրջակային 14 BD տեղացն 16 C չիք վերնագիր 18—19 BCD բնակութեան ‖ բնականութեան 20 C ըստ առաքինութեանն 21 A հրշտակք, BD հրեշտակ, B չիք ի 22 A իմաց, 22—23 BC բնակութեան 23 AC ամենայն, D ամենայն որ ‖ ամենեքեան որ 24 C իւր ‖ բնական 26—27 AC ըստ աւրինին 28 B կործման բանզի ‖ կործանմունք, A չիք հանդիպին և, նոցին 29 AB ըստ բնականն 30 B փախի, B քակտում, 30—31 BCD քակտումն լինի բնութեանն և եղծումն

1 A տանեղատունք, C տանեղունքն 2 D յօղոց CD շաւիղս, C չիք ի 2—3 BD աւղաւարութեան 3 CD եկանել 4 D իւրաքանչիւրոց 5 AD շրջանացն, C չիք վերնագիր 6 A Դ. շրջանք, B շրջան, յեղման 9 B անբաւին, CD չիք և [բացերևեալ] 10 A ունայնի B ի ձև ‖ և ի ձև 11 B ի տեսակս երևի 12 B ըստ ապաւորութեան 13 BCD բացերևեցան ‖ բացերևեցան, D անշարժելի 14 BCD չիք ի 15 D բոլորին 17 A երկնից 17—18 C զպարունակ 18—19 D հաստատութիւն 19 D ջրայարկին, BCD զորս ընտրողականն ‖ որ ընտրողականն է 20 D զերրորդն, AB երկին 20—21 C ընդ հաստատանովքս, B ընդ հաստատովքս 23 B բոլորութիւն 24 CD չիք ըստ, C զչորեցունց 25 A յոր, D տանեղքն, B տանեղատունք 26 CD աւղոցն 27 B ցրեալ, AB յեփելս ‖ ի յեփելս 27—28 AD կիսագունդսն 28 A շրջագայութեան 29 B յարևելս և 30 D չիք նոյն

Իսկ մոլորակք են եւթն, բաժանեալ ըստ եւթն սահմանս աւուրցն, որք են այսոքիկ՝ երեւակն, լուսնթագն, հրատն, արեգակն, լուսաբերն, փայլածուն, լուսինն. քանզի սոքա ինքնաշարժ դիմուք յարեւմտից յարեւելս շրջագայլին և ըստ իւրաքանչիւր տանցն զժամանակս գոյացուցանեն ի շրջանս իւրեանց։

Յաղագս չափուց

Չափք աշխարհիս ըստ չորից բաժանի՝ ըստ տեղոյ և ըստ գունոյ, ըստ ձեւոյ և ըստ թուականութեան։

Քանզի տեղին է եռակարար՝ վերին, ստորին և միջին. և զանազանի ըստ կողմանց վերինն և այլն ես։ Իսկ գոյն քառակի առի՝ սպիտակ, կապոյտ, սեաւ, սաւս։ Եւ ի սոցանէ բաղկանան երանգք, երփունք, փայլմունք, պաղպաջմունք և այլ զանազանեալք ի միում ենթակայումն։ Իսկ ձև քառակի առի՝ եռանկիւնի, քառանկիւնի, երկայն և բոլորակ. և ի սոցանէ ըստ այլ տեսակս զանազանի ձև։ Իսկ թիւ եռակի բաժանի. զի է որ զար առի՝ ըստ հանդիտութեան հաւասար ի սերիցն, և է որ կոճառ՝ ըստ անզուգութեան անհարթ տեսակացն, և դարձեալ՝ որ յանհաւասարցն բաղկանայ, իսկ որ ըստ այսոցիկ ոչ են՝ անբաւք և անչափք ասին։

Իսկ սահմանք աստեղատանցն ի ձեռն ժամանակի մոլորակացն չափի, թուով շրջագայլիցն։ Քանզի ընտրեցան աստեղատունք ամաց երկոտասան եակի՝ ըստ չորեցունց կողմանց աշխարհիս, ըստ նիւթոյ և ըստ յեղման հաստատակաց, ըստ երկրիս մասանց, և ըստ անդամոց մարդոյն, և ըստ ծննդականութեանն, որք անուանադրին՝ Խոյ, Ցուլ, Երկաւորք՝ ըստ արեւելից, որ է աւդ և զարնանային հաստատածիր. Խեցգետն, Առիւծ, Կոյս՝ ըստ հիւսիսոյ, որ է հուրն և ամառնային յեղանակ. Կշեռ, Կարիճ, Աղեղնաւոր՝ ըստ արեւմտից, որ է հող և աշնանային հաստատածիր, Այծեղջիւր, Ջրհոս, Ձուկն՝ ըստ հարաւոյ, որ է ջուր և ձմեռնային յեղանակ։

Իսկ ըստ երկրի ցուակից լինին և ըստ մասանց մարդոյն՝ Խոյն Պարսից, որ է գլուխն. Ցուլն Բաբելացոց, որ է պարանոցն. Երկաւորքն Գամրաց, որ է ուսքն. Խեցգետինն Հայոց, որ է լանջքն. Առիւծն Ասիացոց, որ է կողքն. կոյսն Ելլադացոց

[1] B մոլորականք D չիք են [2] C աւուրց որք, D աւուրց որ [3] B լուսնթագ, հրատ [3—4] A որք են՝ հրատ, արեգակն և այլքն [4] B լուսին [6] A յարեւելս CD ես || ըստ [6—7] C իւրաքանչիւր իւր տանց, B տանց [9] B չափոց, C չիք վերնագիր [11] B ըստ ամենայն տեղս, A չիք և...և, C և ըստ ձեւոյ, A ձեւս [14] AB միջին || և միջին [15] D այլես, A և || իսկ, CD գոյնն [16] CD կարմիր || կապոյտ, B սև, D սեաւն [17] BCD դեղին || սաւս B ի սոցանէն B երփնք || երանգք C երանգն, D երագն [18] C չիք պաղպաջմունք D պաղպաճմունք [19] A զանազանեալ [19—20] A ենթակաումն, B ենթակաւմ [20] A եռակարար B եռակարոլոր, C քառակարար || քառակի AB եռանգիւնի [21] AB քառանգիւնի AB չիք երկայն, BCD բոլոր [22] D սոցանէ || ի սոցանէ, BC այլ ամենայն տեսակս, CD ըստ տեսակս || ըստ այլ տեսակս, BCD ձեւ [24—25] B հաւասկիցն եռիցն, C հաւասար ի սերից D հաւասարի ի սերից || հաւասար ի սերիցն [25] B կոճ ամենայն || կոճառ* [25—26] B անզգուգութեան [26] B հարթ CD տեսակաց [27] BCD չիք որ B այն հարիցն, D որպէս անհարիցն։

[1] C որք, կոչեն || որ, ոչ են B նորա || անբաւք [3] B սահմանքս տեղացն, C աստեղացն [4] B բոլորակացն || մոլորակացն, A կ՞ թուով [5] B շրջջանիցն B և ընդրեցան, CD ընտրեցան և [6] B ԲԺանեկ || երկոտասան [7] C չորեցունց || ըստ չորեցունց [8] B ըստ անիւթոյ, C ըստ թուոյ || նիւթոյ AD հաստատակացն [9] B երիս || երկրիս [9—10] BCD մարդոյս [10] AB ըստ ծնընդականութեանն [11] B անգրէն այս ուղղված անուանդրին, C անուանդրենն, D անուանադրենն, D Մուլն, Եկաւորն, C Երկաւոր [12] C զարնան [13] B հաստատածիրն, A հաստատածք, իսկ Խեցգետի, BCD Խեցգետին [14] B ըստ հիւսուսոյ, C ըստ հիւսիսոյ, D ամառային [15] B յեղանակն, BCD Կշիռ. B Կարիճն [16] A հող, BCD հողն, C աշնան [17] A հաստատածք, B հաստատակ, D հաստատած, D Այծեղջիւր. D Ջրուհոս [18] B ըստ հարեաւ, CD որ է հարաւ || ըստ հարաւոյ, C ջրոյ, D չիք որ է ջուր [20] A ցուակիցն լինել B լինել || լինին [21] B մարդոյս || մարդոյն, CD չիք և ըստ մասանց մարդոյն, C Պարսիկք, [22] A և գ[լուխ]ն || որ է գլուխն, CD Բաբելացիք, A և պա[րանոցն] || որ է [23] BCD Երկաւորն, A և ո[ւսք]ն || որ է ուսքն [24] A Խեցգետն, CD Հայք || Հայոց, A և լ[ա]ն[ջք] || որ է... D լանջք, BD Առիւծ [25] AD Ասիացիք, B Ասորոց, A աջձ [աջ ձեռքն] || կողքն, B որ են, D կողք, A Ելլադացիք.

և Ցանուց, որ են ձեռքն. Կշեռն Արաբացոց, որ են կրթունքն. Կարիճն Բաալացոց, որ են սրունքն. Աղեղնաւորն Կրետացոց, որ են երանքն. Այծեղջիւրն Ասորոց, որ են բարձքն. Ջրհոսն Եգիպտացոց և են ծունկքն. Ձուկն Հնդկաց և Կարմիր ծովուն, որ են թաթք ոտիցն։

Իսկ ըստ ծննդաբաշխութեան՝ արականք են վեց՝ Խոյ, Երկուորի, Առիւծ, Կշեռ, Աղեղնաւոր, Ջրհոս, իսկ իգականք՝ Ցուլ, Խեցգետի, Կոյս, Կարիճ, Այծեղջիւր, Ձուկն։

## Յաղագս զաւրութեանց

Զաւրութեանց չորք են տեսակք՝ արտարերութիւնք, արտահոսութիւնք, արտադատութիւնք, արտատրութիւնք, ուստի ծննդաբաշխականն և բժշկականն բաղկանայ։

Զի ծննդաբաշխութիւնն բաժանի ի տեսակս երիս՝ ի խոնաւայինս, ի ցամաքայինս, ի յերկակենցաղս. ըստ ժամանակի, ըստ նիւթոյ և ըստ կողման արտաքերի։

Իսկ հողոյ եկուն անյեղլի, կամ հաստուն անպակասաբար, կամ աճեցմամբ արտաքոյ, կամ լինելութիւն ըստ նիւթի խառնակցութեանցն անմարթաբար, այլ ոչ ըստ ժամանակի և ըստ կողման և ըստ թանձրութեան նիւթոյ ի համանէ բաղկացուն բնութեան, և ոչ այլայլակ առնի, այլ որ զանազանի ըստ մարթոյ կրից կամ խառնից։

Իսկ որ ոչն արտաքերի ըստ մարթոյ չարանութեան՝ ոչ այսպէս գոյացուն բնութեանն, այլ այլ ինչ վերագոյն ածուն բնութեան և անյեղլի, առանց ծննդեան, յանկարծական հրոյ և լուսոյ՝ անմարմին և անմահ կենդանութեամբ, և կամ թէ համանգամայն ի միջէ նիւթոյ զլինելութիւն առեալ՝ անթուելի բազմութեամբ։

Իսկ բժշկականութիւն է ըստ մզան և ըստ ուղղոյ, ըստ արեան և ըստ մաղձոյ, և յորմէ նեարդք և ջիլք և ոսկերք և երակք և միսք և մորթք բաղկանան. զի բաժանեն յաւդուածն և խառնուածն յարական և յիգական մասունս։

Իսկ զանազանութիւնք խառնուածոյն յերկս զանազանի. ըստ մարթոյն՝ վտիտ և գզար. և ըստ գունոյն՝ չէկ, թուխ, խարտեաշ, պղընձատ. և ըստ մազոյն՝ գռուզ, ձագկ, զանգուր և նուրբ կամ ստուար. և ըստ ամոքայն և համոյն՝ դառն, քաղցր, թթու և կծու։

Իսկ մաղձն և արիւնն են բարձրութիւն

---

[1] A չիք և Ցանուց, BC և են, A և ձ[ա]խ ձ[եռքն] ‖ որ են ձեռքն [1—2] A Կիւլիկեցիք ‖ Արաբացոց [2] A Կշ[ռե՞ց] ‖ որ են կրթունքն, C կռունթքն, A կարիճ [3] BC և են ‖ որ են, A և ս[րնայի] սրն[դամք] ‖ և են սրունքն, A Աղեղնաւոր, D չիք Աղեղնաւորն—երանքն [4] A Այծեղջիւրն, CD և են ‖ որ են [5] A և բ[արձք]ն ‖ որ են բարձքն [5—6] B Եգիպտացիքն, D Եգիպտացւոց [6] A ռն [բերեւս՝ ռն. = սրունքն] ‖ և են ծունկքն, B ծունկն [7] BCD չիք և Կարմիր ծովուն, BCD և են ‖ որ են [8] C չիք ըստ [9] A ջնջված է՝ են վեց, BCD Երկուոր, BC Կշիռ, D Կշիռն [10] D Ցուլն [11] B Խեց ‖ Խեցգետի, CD Խեցգետին, D Կոյսն, Կարիճն, B Այծ, D չիք Այծեղջիւր [13] B և վասն զաւրութեանց, D զօրութեանն, C չիք վերնագիր [15] B արտադատդութիւն, C արտադատութիւնք, D արտադատութիւնք [16] D արտատրութիւնք] AD արտադրութիւնք, B արտատւութիւնք, C արտատտութիւնք [17] B բժշկական [19] B ծննդաբաշխութեան [20] C Ի խոնաւսին [20—21] ի ցամաքսին, D և ի ցամաքայինս [21] AB յերկակենցաղս, D երկակենցաղս ‖ ի յերկակենցաղս [22] A չիք և [24] A հողոյն, D հողւոյ եկուն [26] B լինելութեանց [26—27] C խառնակցութեան, D խառնակցութեանց։

[2] A նիւթի, B նիւթ, B յայնմանէ ‖ ի համանէ [3] B բնութեանն, B առնէ [4] A մարթոյն [5] C կայ ‖ կամ, A խառնից կամ կրից [7] B չարանութիւն, CD չարախառնութեան, CD ոչ է [8] D բնութեան, B բնութեան ի վերայ զ(պատռված) բնուեն (պատռված) A չիք այլ, B յայլ ինչ, B չիք վերագոյն [9] A չիք բնութեան, C բնութեանն [10] B ծնընդէն [12] B ի միջոյ [13] C զլինելութիւնն, D լինելութիւն։ A անթնդելի ‖ անթուելի [15] B ըստ բզազան (պատռված) ‖ ըստ մզան [16] C ըստ ըղղոյ, B ըստ մաղձի, A չիք և [17] B յորենէն ‖ յորմէ, CD յորմէ են, D յաւղք, BC աւղք ‖ նեարդք, ACD ոսկր [18] B չիք երակք [19] B և զի բաժանի, D բաժանին, յաւուածն ‖ յաւդուածն, A բաժանի [20] B յարուական, BD իգական [21] A զանազանութիւն, B զանազանութեամբ [22] A վատիտ, C տաոյց ‖ վտիտ, [23] A գզար, A ըստ ‖ և ըստ, C ըստ գունոյն, BCD կամ թուխ [24] B խարտեաշ, D պղընձուր, B ըստ մաղձոյն [25] C չիք ձագկ, D գռուռ, A և կամ նուրբ [26] D չիք կամ ստուար—դառն, A ստամոքայն ‖ ամոքայն BD, լինդիցն ‖ համոյն [27] B զառնաքաղցի կամ կծու. CD կծու ‖ և կծու [28] A մաղձ, D չիք են բարձրութիւն—յեղանակացն։

նութիցն և հաստատութիւն յեղմանցն, և զանազանելն ըստ ժամանակի յեղանակացն։ Եւ ի սոցանէ լինելն առողջութիւնք և հիւանդութիւնք զժուարինք. զի ըստ զոյգ և ըստ կշեռ բարեխառնութեան լինի առողջութիւն, իսկ ըստ առաւելութեան՝ այլս այլս հիւանդութիւնք։ Քանզի ի սեաւամաղձութենէն՝ լուսնոտք, և ի մխաւտարենէն՝ ուրկութիւնք, և ի խառնութենէն արգանդի արեանն՝ ամլութիւնք, և ի ցրտոյ թիկանց՝ արուին անարութիւնք։ Այսք ըստ առաւելութեանցն բաղկանան։

Իսկ վարք կենացն ի բնութենէն վարժելով հարկաւոր ընդի, ուստի նախանձ և փառասիրութիւն և ցանկութիւն, զաւրավիգն լինել, յորմէ պատերազմունք մարտիցն բաղկանան. և խորհուրդք միշտ ի շնորհս անձին իւրում ընկալեալ ծնանի զիմացուածս բանի և ներգործութեան, զի է, որ ըստ մարմնոյ և է, որ ըստ հոգւոյ աւգտի։

Իսկ մահ է լուծումն զգայութեանց և քակտումն և որոշումն նիւթոցն, զի է, որ պատահմամբ՝ ըստ խառնիցն և է, որ բնական՝ ըստ կրիցն։ Եւ լինի պատահումն ըստ ժամանակի ի պատերազմի, կամ յայլ որոգայթից, կամ յախտից հիւանդութենէ ի մէջս կենացն ծախել։ Իսկ բնականն է ըստ զաւրութեան մինչև ի պակասել ջերմութեան ուժոյն, և զիանելի է ի ծնելութենէն ըստ ժամանակի, ի շրջագայութենէ մոլորակացն, իսկ ըստ զաւրութեան նիւթոյ յեղանակացն այլ է պատճառ զգայական մարմնոյ և ուղն, զի ըստ բարեխառնութեանն և յառոյգ սերմանեաց երկրին, յորմէ շուշափի և կերակրի՝ առողջութիւնք և աճմունք բաղկանան։

Իսկ սոցին հակառակն այլս այլս ցաւոց և խառն մահուան լինել պատճառ, որ ըստ շարժման աւդոյն դառնութեան, ի ժամանակս եկամտացն, ըստ նիւթոյ յեղմանցն և ըստ խառնուածոյ մարմնոյն, պատահել աղդմամբք ի սերման բարձումն կենդանութեան լինել։

Արդ, որք ըստ ժամանակի և ըստ զաւրութեան ոչ են՝ անեղին են սքանչելագործութիւնք և ոչ բնութեան նիւթականացն։

### Յաղագս ազդմանց

Ազդումն բնութեանց եռակի բաժանի. զի են, որ սնուցիչք են և են, որ իմաստնացուցիչք և են, որ մակացելիք։

Արդ՝ սնուցչացն երկու են տեսակք՝ նիւթ և ժամանակ. զի քառակի ըստ

[1] B հաստատութիւն || հաստատութիւն [2] C զանազանի, B չիք ըստ ժամանակի [3] B լինեն, C լինի [5] BCD կշիռ [5—6] B բարեխառնութիւնք լինին առողջութիւնք [6] A չիք լինի [7] CD այլս այլս լինին [8] B ի սեայմաղձութենէն, C սև մաղձութենէն, D սեւամաղձութենէն [9] C լուսնոտքն, D լուսոտք [9—10] B ուրկութիւն, C ուրկութիւնն, D ունակութիւնք || ուրկութիւնք [10] A ի խառնութենէ, B չիք և ի խառնութենէն, BCD արգանդին, B արեան [11] C ամլութիւնն, D ամլութիւն, B չիք ի, A ցրոյ [12] C չիք արուին, D անարութիւն [13—14] BCD չիք Այսք ըստ առաւելութեանցն բաղկանան [14] A վարքն կենանցն || վարք կենացն, D ի բնակութենէն [14—15] ABD պատժելով || վարժելով [15] BCD հարկաւոր, BC ընտի [16] D փառասիրութիւնն, B ցանգութիւն, C ցանկութիւնն [16—17] B զօրաւիգն, D զօրաւիգն [18] CD մարտից, CD խորհուրդ [19] CD ի շնորհ [19—20] BCD ընկալեալ || ընկալեալ [20] B բանից [22] C չիք է որ [ըստ հոգւոյ], D հոգւոյ [23] A զգայութեանցն [24] B քակտումն, B յորոշումն, A նիւթիցն D զի || զի է [25] C և ըստ խառն, B ըստ խառնուցն || ըստ խառնիցն [27] D ի պատերազմին [28] BC և կամ, D չիք կամ, D այլ BC որոգայթից և։

[1] B ի մէջ, BCD կենաց [2] D ի սկզբանէ || իսկ բնականն է, B բնական || բնականն է, C բնական, D մինչև [3] D ջերութեան ուոյն [5] A ի շրջագայէ, B ի շրջագայի, D ի շրջագայլին || ի շրջագայութենէ, A մոլարացն, B մոլորակաց [5—6] B չիք իսկ—յեղանակացն [6] C զօրութեանն, D զօրութեանց A եղանակացն [7] AC ուղը, D յօղը [8] B զի բարեխառնութեան, B առոյգ, D յառոյգք [9] C սերմանութեանցն [10] B աճումն [11] B բաղկան, D բաղկանայ [12] BC սոցա, B հակառակըն [13] B խառնման || խառն մահուան [14] D յօդոյն, B դառնութիւն, D շարժման յօդոյն, B չիք ի [15] ABD նիւթի [16] B յեղմացն, B ըստ խառնուածոյ, D խառնուածոց [16—17] B մարմնոյ [17] B աղդմբ. ի սերոն բձու (պատռել). A կենդանութեանն, D ի կենդանութեան, A լինի [19] ABD որ, B ամենայն ժամանակի, A չիք ըստ [զաւրութեան] [20] A անեղի, B անեղին || անեղին են [21] B ի բնութեան, C բնութեանն [21—22] BD նիւթականաց [23] C չիք վերնագիր [25] B որք, C սնուցիչ, A և որք || և են որ [25—26] BC իմաստնացուցիչք են D իմաստացուցիք են [26] B և որ || և են որ [27] C տեսակ [28] A ժամանակք։

հանգիտութեան հանգիտմանցն առդանել զսերմանս տնկոց և բուսոցն զանազանութեանց։

Իսկ իմաստնացուցիչք երկակի բաժանին՝ ըստ տեսանելեաց և ըստ ձայնից։ Եւ տեսանելին եռակի բաժանի՝ ի գոյն, ի ձև և ի կերպարան։ Իսկ գոյն ըստ չորից բաժանի՝ սեաւ, սպիտակ, կապոյտ և սաւս, իսկ խառնուածք ի սոցանէ բաղկանան ի զանազան տեսիլս գունոց։ Նոյնպէս և ձևքն քառակի զանազանին՝ ըստ կրի բաժանականին, որ է եռանկիւնի և քառանկիւնի, երկայն և բոլորակ։ Իսկ ի ձևի կատարեալ է բոլորակն ըստ ձևոյ և ըստ շարժման աշխարհիս ի նոյն անդրէն դառնալ։

Իսկ կերպարան է ի դէմս, և դէմք՝ յանձնառի, և անձնառ՝ ի տեսակի, իսկ տեսակ՝ ի սեռի։ Եւ է կերպարան իսկապէս ի վերայ ծննդեանց և եղմանց և ստեղծմանց, որ յանհունս արտաբերեալ զանազանին՝ նմանք և աննմանք, ի ձեռն անդորդ ժամանակի և շարժման։ Իսկ պիտակարար, որ ոչ ընդունի գրնականութիւն, որպէս ի վերայ չորեցունցն երեք ախտաստացականից և սարընոց և վերադասականաց, և ի վերայ գերադունին սահմանի, զի արտաբերեալ զանազանին ըստ լինելութեան նիւթոյ։ Եւ ի սոցանէ են, որ կամաւ և են, որ ակամայ և, որ ոչ կամաւ և ոչ ակամայ՝ բռնադատութիւն, զի ոչ յումեքէ հարկի։

Իսկ ձայն է տարբական, բաժանեալ ի տեսակս չորս՝ անկենդանական, զգայական, բանական և պիտակարար բանական։ Զի անկենդանականն, միջնորդաւ ուռուցմանց, նշանակք են մարմնոց և բախման նիւթոց։ Իսկ զգայականն՝ նշանակք են առ միմեանս ասկս ծանաւթութեան տեսակացն։ Եւ բանականին գծածք ձայնից են նշանակք և ձայնք իմացմանց, իսկ իմացուածն իրին և իրն անիրին։

Բայց բաղկանայ իմացուածն ի տեսլենէն և ի ձայնէն ի մարդս բնաւորեալ, ըստ շարադրութեան և առժամայն իմացմանց։ Իսկ աստուածայնոցն ոչ այսք բաղկացեալ իսկապէս, այլ երբեմն պիտակարար եղով։

Իսկ մակացելին է արհեստ և բաժանի ի տեսակս չորս՝ ի գործնական և ի բանական, ի տեսական և յիմացական։ Եւ գործնականն՝ ի անաւրինական, ի բարոյական և ի քաղաքական։ Եւ բանականն՝ յապացուցական, ի տրամաբանական, յիմաստական, ի բաժանական, ի վերլուծական, ի սահմանական։

[2] D սերմանս, BD տնկոցն, C բուսոց և տնկոց AD բուսոց [4] AD իմաստացուցիչք [4—5] BD բաժանի [5] C տեսանելեացն, C ձայնիցն [7] A և ի ձև, C չիք և, C գոյնն [8] B ի սպ[իտա]կ, կապոյտ, սեաւ և դեղին, C սպիտակ, կարմիր, սեաւ և դեղին, D բաղխակն, կարմիր սեաւ, դեղին [9] A խառնուածքն, B խառնակութիւնքն [10] B բաժանի ‖ բաղկանան, C գունից ‖ տեսիլս գունոց, B գունոցն [11] CD ձևք ‖ և ձևքն, B ըստ քառակի, D ըստ քառից ‖ քառակի, AB զանազանի [12] B ըստ կարի, C ըստ կղի (պատվով, կ՛րպի), D բաժանականի [12—13] ABC եռանկիւնի և քառանկիւնի, D չիք և, C և երկայն, A երկարն [13—14] B բոլոր [14] BCD ձև փխ ի ձևի [15] D շարման [17] C ի դէմք, B ի պէմի [17—18] D դէմ անհառի, B և դէմսն հանդիպ (պատվով) [18] AB անհատն, տեսակն [19] C Եւ ‖ Եւ է [20] B ծնընդոց, CD ծնելոց [21] AB յանհունսն [21—22] C տարաբերեալ [23] D շարման, [24] C չիք որ [24—25] CD գրնակութիւն, B գրնութիւն փխ գրնականութիւն [25] BCD չիք ի վերայ, C չորեցունց [26] BCD ախտատատացականի, D սարընոց ‖ և սարընոց [27] D վերոյգասականաց, C չիք ի [27—28] A գերադունի [28] B չիք սահմանի [29] C ըստ նիւթոյն փխ ըստ լինելութեան նիւթոյ

[1] C կամաւ են [1—2] C ակամայ են [2] A և է որ [4] BD ձայն որ է, C ձայն է որ է, B տարական [5] A բ. [երկու] ‖ չորս, B անկենդանականն զգայական [6] A բնական և պիտակարար բնական [8] D ուռուցմանցն [9] BC բարախման, D ևս բախման, A նիւթից, A զգաականն, B ազատականն [11] B բանական են ‖ բանականին, C բանականի [13] B իմացուածն [15] B իմացեծն [15—16] C ի տեսլենէ [17] C շարադրութեանն, D առժաման [18] B կրկնված է «աստուածայնոցն» [19] B այս [19—20] D պիտակարեր եղով [22] C չիք տեսակս [22—23] CD ի գործնականն, ի բանականն, ի տեսականն և յիմացականն, C ի բանականն ‖ և ի բանական [23] D ի տնտեսականն ‖ ի տեսականն, D իմացականն [24] A գործնական, BCD անաւրինականն [24—25] A բարոական, BD ի բարոյականն, C ի բարուական [25] BC ի քաղաքականն, D քաղաքականն [26] BCD յապացուցականն ի տրամաբանականն [27] C յիմաստասիրականն ‖ յիմաստականն, BC ի բժշկականն ‖ ի բաժանական, D ի բժշկական, A բաժանական [28] BC ի վերլուծականն, ի սահմանականն, AD վերլուծական սահմանական։

Եւ տեսականն, ի ձեռն որոյ խնդրականն* ի գիտաւորականն, յանմեկնելի որոշումն, ի ստորոգութիւնս էակացն, յանդէմ կացադրութիւնս, ի պատճառ մակադրութեան, ընդ որով մատամբ վերաբերութիւն, յեղանակ վարդապետականին։ Իմացականին՝ չար և բարի, ժամանակ, կատարելութիւն, սկիզբն և կատարած, բնութիւն՝ սահմանական և արարչական, էականութիւն, նիւթ և շարժումն, ունայն, անբաւ։ Զի և սահմանաւ բաժանեալ առանձնանան։

Փանզի սահմանք գործնականին են՝ կամք, յաւժարութիւն, ընտրողութիւն, բարկութիւն, ցանկութիւն։ Եւ՞ բանականին՝ անուն և բայ, բան և բացերեւական բան, ստորասութիւն և բացասութիւն։ Իսկ տեսականին՝ գոյութիւն, երևակայութիւն, կարծիք, տրամախորհութիւն, միտք։ Եւ իմացականին՝ որոշմունք մտաց, իմաստք և խորհուրդք, գիտութիւն և յառաջտեսութիւն։

Իսկ կալմունք արհեստից է բնութիւն անխնդրելի, անհաս ի ժողովմանն, որ առ մարդ, յորս ամենայնքն երևեալք բաժանին՝ բաղկացելիք և անբաղկացելիք և մակացելիք։ Իսկ բաղկացելիքն և անբաղկացելիքն ընդ միմեամբք՝ դասի և ստորադասի երկմասնաբար։ Եւ մակացելիքն ի բաղկացելեան և յանբաղկացելեան տրամանկիւնիւք բաղկանան. ուստի կատարեալ լինի վերեակն։ Փանզի են երկու բաղկացելիք ընդ միմեամբք, և մի տրամանկիւնի։ Եւ դարձեալ բաժանի մարդն ըստ բնութեան և ըստ տեսակի, ըստ հաւասոյ, ըստ յաւուր և ըստ սիրոյ։

***

Արդ՝ յաղագս գիտանացու սեռիցն այսքան ասացեալ, որ ի վերայ ժամանակի արտադրեցան՝ գիրք, կարգք, շրջանք, չափք, գուրութիւնք, ազդմունք։ Վասն զսահմանս բնութեանն ժամանակի հաստատուն ունել զշարժմունս շրջագայ մոլորակացն, որ են գոյացուցիչք ժամանակի։

Իսկ անմոլարքն՝ նշանակք տեղեաց, ընթացից և որոշմանց ժամուց, և ի պատահմունս առ ի չեղ շրջագայիցն ընդ նմին չաւիղ առ զազդումն գիտութեան իմաստասիրին։ Այսք են սահմանք բանի առաջնոյ երրեկին, որ է Աստուծոյ բանաւորութիւն, զոր և մասնական զալ ասացին։

## II. ՅԱՂԱԳՍ ԳՈՐԾՆԱԿԱՆԻՆ

Իր է՝ անուրինական, բարոյական, քաղաքական։

* C ձեռագրում ավարտվում է «Խնդրականն» բառով և հետևյալ հիշատակագրությամբ՝ «զՅակոբ Դրիմեցի, սպասաւոր բանի, աղաչեմ յիշել ի Տէր»

1 B և ի տեսականն, 2 B ի գիտաւորէն (պատռված) 3 B ի ստորոգութեան էակացն 4 B յանդէմակացադրութեան, D բացադրութիւնս || կացադրութիւնս, A կացադրութիւն, B և ի || ի 5—6 B վերաբերութեան 6 D եղանակ 7 B չիք իմացականին, BD չարոյ և բարոյ 8 BD կատարելութեան, 8—9 D կատարածն 9 BD բնութեան 10 B արքչան, D արարչական || և արարչական, BD էականութեան, D ի նիւթ 11 B յայժ ին || շարժումն, B Զի || Զի և 12 B բաժանել առանձնականք 13 B Զի || Փանզի, AD սահման, A գործականին 14 D ընտրողութիւն, յօժարութիւն, B ընդրողութիւն 15 BD ցանկութիւն, բարկութիւն 16 BD բայ || և բայ, B բացերեւական բան, D բացերևականն 17 B ստորոգութեան և բացասութեան 18 B գոյութեան 18—19 A երեւակայութիւն, B երևակութեան 19—20 B տրամախոհութեան, AD տրամախոհութիւն 20—21 D որոշմունք մտացականին որոշմունք մտացն 21 B իմացուածք || իմաստք 22 B յառաջտեսութիւն 24 B յանհաս 25 B յոր, B ամենայնք երևեալ, D ամենեքեան երևեալ 26—27 B չիք բաղկացելիք—եւ, B անբաղկացելիք է || անբաղկացելիք։

1 B դասէ || դասիւ 2 B ստորադասէ 2—3 D մակացելիքն || Եւ մակացելիքն 3—4 D չիք և յանբաղկացելեան 7 AD տրամանգիւնի 9 A ըստ հաւատոյ, D չիք ըստ յաւուր 10 A ըստ սիրո 11 B ըստ || յաղագս, D գիտացու սեռից 13 BD կարգ 15 D վասն զի սահմանս, B վասն սահմանս, BD բնութեան ի ժամանակի 16 D հաստատ, A ի շարժմունս 17 D շրջակայի, B մոլորութեանց || մոլորակացն 19 B նշանակ տեղացն, D տեղեացն 20 A որոշման, B ժամուց 21 A շրջագայից, D շրջագայից 22 B զազդումն, D զազդումն 24 A առաջնոյ, B յերրեկին 25 BD զոր իմաստնականն || զոր և մասնական 27 A Յաղագս գործականին, զոր ի վերա կատարելութեան բանի ասադրեցին, B Յաղագս գործնականին, զոր ի վերայ կատարեալ բանի ասադրեցին, D Իսկ գործնականին, զոր ի վերայ կատարելութեան բանի ասադրեցին 28 A բարուական ի քաղաքական, B բարուական ի քաղաքական։

## [Յաղագս անաւրինականին]

*Արդ, բաժանի անաւրինականն՝ ի համեստական, ի պատշաճական, ի անտեսական։ Զի համեստականն է արգելուլ ըստ վեհագունին, պատշաճականն է չափաւորելն ըստ ճոխութեան, իսկ անտեսականն է պաճարելն ըստ յաջողութեան։ Եւ այս անաւրինականն հոգացողութիւն Կայթեանց։*

## Յաղագս բարոյականին

*Բարոյականն է շարադրութեամբ օրինակեալ առ ի վարս առաքինութեան կամ չարութեան։*

*Եւ առադրի սողնոցն ըստ բնութեան, և գաղանացն և անասնոցն՝ ըստ անընդեան, և թռչնոցն և լուղակացն՝ ըստ սովորութեան։*

*Եւ այս բարոյականն խաւսք բարուց զգայուն կենդանեաց։ Իսկ բարանդականն է, որ ըստ ժամանակի շարադրի, զի ի բուսոց կամ ի անկոց առադրեալ աւրինակի։*

## Յաղագս քաղաքականին

*Քաղաքականացն նախադրի քերականութիւն։ Եւ է քերականութեանն երեք տեսակք՝ նմանութիւն, քերթութիւն, քերթողութիւն։ Եւ այս նմանութիւն մանկական իրաց։ Եւ մասունք են վեց՝ վերծանութիւն ներկուռ ըստ առոգանութեան, զրուցատրութիւն ներգոյս ըստ քերթողական յեղանակս, լեզուաց և հնագէտ պատմութեանց առձեռն բացատրութիւն, ստուգաբանութեան գիւտ, համեմատութեանց տեղեկութիւն, զատումն քերթուածոցն։*

*Եւ քերթութիւն այս առասպելավարժութիւն՝ ըստ ընտրութեան տառից, ըստ վանգից և ըստ փաղառութեանց, ըստ բառից և ըստ շարադրութեանց, ըստ պարզութեան ոտիցն վարման։*

*Եւ քերթողութիւն է ըստ մասանց բանի։*

*Եւ են մասունք բանի ութ՝ անուն, բայ, ընդունելութիւն, յաւդ, դերանուն, նախադրութիւն, մակբայ, շաղկապ։ Իսկ անուն և բայ կատարեալք են հոլովմամբ և շարադրութեամբ և ըստ յառաջադասութեան։ Իսկ այլքն են, որ ընդունելութիւն են, և որ յաւդ են ըստ բայի, և են, որ նախդիր են, և որ փոխանակ են ըստ անուանն, և են, որ մակայդ և որ կապ են։ Եւ նաւավարի բանն հանդերձ իրաւք ի ձեռն ձայնի ի վերայ աւդոյ։*

*Իսկ քաղաքավարականն շարադրի ըստ նախերգութեան, ըստ կազմութեան և ըստ յորդորման։*

*Եւ բաժանին գլուխք մասանցն ի բաղ-*

---

[2] B անօրինական, D ի համեստականն [3] D պատշաճական [4] BD չիք է [5—6] BD չափաւորել [6] A ըստ ճոխութեանն, BD չիք ըստ [6—7] A և անտեսականն || իսկ անտեսականն [7] D չիք է [8] B անօրին || անօրինականն [8—9] BD հոգւոց (B հոգոց) ուղղութիւն [9] չիք կայթեանց [10] B բարուականին [11] A բարոյական, B բարուականն [14] B սողնոց [15] B գաղանոց, անասնոց [15—16] AD ըստ անընդեանն [16] B թռչնոց, B լողակացն, D լողականաց, [17] A սովորութեանն [18] A բարոականն, B բարուականն [19] A զգաուն, B ազայուն, A կենդանեացն, B կենդեաց, AB բարբառնական [23] B քաղաքականին, D քաղաքականնին [24] A նախ առաջքի || նախադրի (Հայկզ. բառգիրք՝ նախադրի) [24—25] B քերականուէք (պատվով) [25] BD քերականութեան [26] BD տեսակ, B նմանութեան, քերթութեան, քերթողութեան A քերզութիւն՝ քերդողութիւն [27] B նմանութիւն [28] B վեց՝ ա. (առաջին) [29] D ըստ ներկուռ, D առոգանութիւն || առոգանութեան։

[1] B Բ. (երկրորդ)՝ զրուցատրութեան, BD ըստ ներգոյս [2] B Գ. (երրորդ) լեզուաց [3—4] B բացատրութեանց [4] B Դ. (չորրորդ) ստուգաբանութեան, D ստուգաբանութեանցն [5] A համեմատութեան B Ե. (հինգերորդ) համեմատութեանց, D համեմատութեանցն [5—6] B Զ. (վեցերորդ) զատումն D և զատումն [6] A քերդածացն [7] B քերթութեան [7—8] B առասպելավարժութեան [8] BD չիք ըստ ընտրութեան [10] AD շարադրութեան || ըստ շարադրութեանց [11] B ոտից || ոտիցն վարման, D ոտից նման [12] B քերթողութեան [13] B չիք և են մասունք բանի, D չիք ութ, A և բայ [14] B ընդունելութեան, նախադրութեան [15] A մակբա [17—18] B առաջադրութեան [18—19] B ներընդունելութեան || որ ընդունելութիւն են, D ընդունելութեանն է [19] BD են որ յօդ են, B ըստ ամենայն բայի [20] A նախադրեն, BD նախդրեն, ուղղում ենք՝ նախդիր են, BD և են որ փոխանակ են, B փոխակ [21] B ամենայն անուան, D անուան, A մակայդ են, B մակայք են, D մակայդ են [22] B և են որ, A բան [23] B իւրովքն, D իւրով [24] A ուդա, D օդոյն [25] A քաղաքավարական [28] A բաժանեն, B բաժանի գլուխն, A բախոհականն, B ի բան || ի բաղխոհականն։

խոհականն, ի յատենականն, ի կացբրդականն։ Զի բազխոհականն պատմութիւն է ըստ ժամանակի և ատենականն է տեղի ըստ ատեալարանի, իսկ կացբրդականն է գովել կամ պարսավել։*

¹ A յատենական, D յաղենականն, A ի կացրդական, B ի կացբրդականն ² A բախոհական, B բազհուականն, B պատմութեան ³ D ատենական ³⁻⁴ B տեղի ըստ ամենայն տեսակորդ, D տեղի ըստ ատեարանի ⁴ A կացբրդական, D կացբբրդականն, B կացգուբ || կացբրդականն ⁵ B գովեալ և պատուել։

* A ձեռագրում այս գլխին հաջորդում է ճառտաանակյան մի հատված «Յաղագս միմոսութեան» վերնագրով. «Միմոսութիւն է կերպարանումն պիտակաբար առ ի խաբէութիւն. և լինի ըստ այսոցիկ՝ ի խամութենէ և ի տկարութենէ մտաց և գիտութեանց այլոցն քննել չափին, և ի խաւմութենէ և ի զուարթութենէ՝ կարծիք այլոցն երկբայցեալ լինին։ Եւ ըստ գովին և ըստ գիւրացուցանելոյն խախտումն և շրջումն իմաստիցն լինի. և է ըստ բաղարական վարուց» (A, էջ 241 ա)։

BD ձեռագրերում «Յաղագս միմոսութեան» գլխի փոխարեն բերված է «Բովանդակութեան աճեցման, յայլ զրոց» (B) կամ «Յաղագս բովանդակութեան» (D) վերնագրով հետևյալ գլուխը՝ «Զբովանդակութիւն[1] յարժամ լսեցես գնամար աշխի տես գիտել խառնեալ են[2] երկինքն[3] և երկիր զուգակցութեամբ յերկնից տեսեալ[4] հրաման զօգս ընդ հող խառնեալ։ Արդ՝ հրմտացիս[5] զօրութեամբ, որ է ի մէջ[6] երկնի և երկրի զօրութիւն[7] ջրոյ և յայտնութիւն[8] հաղմոց է, տես գիտել ծաղկեաց մածոյց գիւրովին և արգել իւր կանգնեաց[9]։ Արդ՝ երեք ինչս պարտ է առնել ջուր։ Եւ որ ինչ են[10] աստացուք՝ չաեմարան, զօրութիւն, բուրումն։ Արդ՝ յայտնապէս աստացուք չաեմարան է ի ջուրս[11] յորժէ օդք[12] եղանեն ի ջուրս՝ հաստատին և թարթափին, սարսափին և նազանե։ Եւ եւք[13] նոցա ի ծովէ են, և գնացք ընդ երկինս[14] զշաեմարանս նոցա և գնացս նոցա անցեալ[15] յայտ արարից։ Զուր է[16] լայնանիստ շաեմարանական օդք անհանգիստք[17] եւք նոցա արտաքին ծովէ է և գնացք[18] նոցա յարտաքին ջուրսն։ Քանզի ծով, որ ծածուկ ոչ ունի՝ արտաքին է, իսկ յորոյ վերայ երկինք է՝ ներքին է[19] և ընդ մէջ ջրոց[20] և երկրի օդք են և բազում անզամ մնաւք[21] և շարժմունք[22] առնեն և բազում օդոստ[23] յազդեցս և յերակս ջրոց.[24] Եւ երկինք[25] հաստեալ են[26] ի վերայ երկրի[27]։ Այսուքիկ բովանդակութիւն, զոր առեմ ընդ բովանդակութիւնք[28] ամենեցուն, և տէր բանն աստուծոյ է»։

¹ D բովանդակութիւն, ² B չիք են, ³ B երկինք, ⁴ B առեալ || առեալ, ⁵ B հմա-գիս || հմտացիս, ⁶ D որ ի մէջ, ⁷ B զօրութեամբ, ⁸ B յայտնութեան, ⁹ D կարգեաց || կանգնեաց, ¹⁰ B ինչեն || ինչ են, ¹¹ D ի ջուրցս, ¹² D օդ, ¹³ B եւք || եւ եւք, ¹⁴ D գնացք նոցա յերկինս, ¹⁵ B անցել, ¹⁶ B ջրային ուղղված է՝ ջուր է, ¹⁷ D անհանգիստ, ¹⁸ D գնաց, ¹⁹ B արտաքին է || ներքին է, ²⁰ B ջուրց, ²¹ B մնաւ, ²² B շարժմունս, ²³ B անզամ || օդուստ ²⁴ D երակս ջուրց, ²⁵ B երկինք || և երկինք, ²⁶ B հատլ (պատռված) || հաստեալ, ²⁷ B երկր. ²⁸ D բովանդակութիւն նոցա || բովանդակութիւնք։

Այս երկու գլուխներն էլ հետամուտ են և, անշուշտ, կապ չունեն Զենոնի աշխատության հետ։

## [ՅԱՂԱԳՍ ԲԱՆԱԿԱՆԻՆ]

### Յաղագս սահմանաց և բաժանմանց

Արդ, քանզի պարտ է նախ բաժանման զօլ ապա սահմանին։ Զի է բաժանումն եռակի՝ ստորական և վերական։ Եւ ի տեսակս չորս բաժանի՝ տեսական և մասնական, ի նման և յաննման և գիմագրական... կրկին միաւորութիւն, որ է առանձնական։ Իսկ սահմանական բաժանի ի տեսակս չորս արամարանութեամբ, այսպէս, թէ՝ զի՞նչ է, և ուստի՞ է, և որպիսի՞ են, և վասն է՞ր է։

Իսկ հատածք աւրինակի զանազանութեամբ մասանցն, ըստ նոցա բա[ժանի] այսպէս։ Առաջին, զինչ է սահման բաժանեալ յանկին ի սեռէ և ի բաղկացուցիչ զանազանութեանց, Բ՝ զանազանի ստորադրականն, որ ի պատահիցն պարագայի. երկրորդ, ուստի՞ յայտ է սահման՝ յազգականացն ցուցմանէ, յորմէ՞ առնու՝ յենթակայէ և կատարմանէ, ո՞ր է կատարեալ սահման և ո՞ր անկատար, կատարեալ է, որ զընականն ընդունի, ըստ հոլովմանցն անուանցն և բայից, նաւավարել առ ի յութիւն ինչ իրաց զօլ։ Եւ անկատարն է, որ ի պարագայիցն պարագայի, որ նշանակ է անուան կամ բայի։

Քանզի են սահմանք իմաստասիրութեան՝ գիտութիւն էակաց, գիտութիւն աստուածայնոց և մարդկայնոց, խոկումն մահու, նմանութիւն Աստուծոյ, ար[ուես]տ արհեստից և մակացութիւն մակացութեանց, իմաստասիրութիւն՝ սիրելութիւն իմաստութեան, որք են վեց։

Եւ դարձեալ, ըստ քառակին բաժանի՝ հուպ ենթակա՝ անուանդ և հուպ կատարումն՝ լաւութիւն, հեռի ենթակայ՝ միտք և հեռի կատարումն՝ ճշմարտութիւն։ Եւ ըստ առաւելութեան՝ բան և կեանք, և ըստ ստորադրականութեանն՝ մարդ և ժո-

¹ Այս գլուխն իր ենթագլուխներով պահպանվել է միայն ընդարձակ խմբագրության (A ձեռագիր) մեջ։

² Ենթագլխի ամբողջական վերնագիրն է «Յաղագս սահմանաց և բաժանմանց, զոր ի վերա բնութեան ստորագրեցին»։ ⁸ երեք տառի չափ տեղ եղծված է։ ¹⁵ բնագրում՝ Ա. || առաջին, ¹⁹ բնագրում Բ. || երկրորդ, ³³ Զ. || վեց։

զովունն, զոր պիթագորեանքն պատուեն. քանզի էակն ի չորից բաղկանայ, չորս շարժմամբ:

Վասն է՞ր սահմանք իմաստասիրութեան վեց: Առաջին՝ է վասն էակայն, քանզի է, որ ասի և ոչ է, և է, որ ոչ ասի և է. և երկրորդ՝ վասն թ[ո]ւականութեանն, քանզի վեց կատարեալ է երկմաս[ամ]ը և երրեկով և կիսով երկոտասանեկին: Եւ քառակն է զոր, յորմէ զլուխք կոճատագարուցն բաղկանան, ըստ արհեստին:

Եւ են տասնեակք՝ Դ. Ժ. Ճ. Ռ. Ա. Դ. Գ. Բ. Ա.: Եւ ասի մանական ի տեսակս իմացականին: Իսկ եռակն է կոճատ և նշանակ զարկճատացն զոլ, և ըստ արհեստին կատարեալ է ի տեսակացն և ի ճառելոցն:

Եւ դարձեալ սահմանի թիւ եռակի՝ ըստ արհեստին, զոր է լսելն զԱստուծոյ և կոճատ է խաւսելն ընդ Աստուծոյ, իսկ յերկոցունց է քննելն զԱստուած: Ո՞ր է առաջին և ո՞ր վերջին: Առաջին է գիտութիւն էակաց, որք շուրջ են զգայութեամբք, և գիտութիւն աստուածայնոց և մարդկայնոցն զրութեանց, քանզի ոչ ամենայն Աստուած պաշտաւն և ամենայն մարդ պաշտաւնեայ:

Երկրորդ է խզումն մարդկան ախտի կենաց և ըմբռնել ի պարզն և յանախտականն, և նմանութիւն Աստուծոյ կարիւն և գիտնականաւն և բարեաւն. զնման ըստ մարդկային բնութեանս է, և ոչ ճշմարիտ Աստուած զոլ, քանզի Աստուծոյ կարելն և գիտելն և բարերարելն յանբաւս է, իսկ մարդկայինն՝ ընդ բաւականաւ, զի միայն կամելն և յաւժարելն և ընարելն առ ի նմանութիւն Աստուծոյ բաղկանալ է:

Երրորդ է արհեստ արհեստից և մակացութիւն մակացութեանց: Արդ, արհեստիցն է գործ[ն]ականն, իսկ արհեստ՝ բանականն, և մակացութեանցն է տեսականն, իսկ մակացութիւն՝ իմացականն, և այսպէս՝ իբրու թագաւոր թագաւորաց և Աստուած աստուծոց: Եւ իմաստ[ասիր]ութիւն՝ սիրել զիմաստութիւն, ստուգաբանութեամբ: Քանզի ամենայն իմաստասիրութիւն եռակի բաժանի՝ ի լսել իբրև զԱստուծոյ, և խաւսել իբր ընդ Աստուծոյ, և քննել իբրև զԱստուած:

Իսկ զիւտ սահմանացն է ըստ բանական արհեստիցն և պատճառ է հնարական միտք աշխարհիս, որ է Աստուած:

### Յաղագս ապացուցի և տրամաբանութեան

Ապացուցականն ի շարաբանութենէ բաղկանայ, իսկ շարաբանութիւն ի նախադասութենէ և ի ստորադասութենէ, իսկ նախադասութիւն և ստորադասութիւն՝ յենթակայէ և ի ստորոգելոյ, և ենթակայն՝ ի ներքոյկացելոց զիմաց, իսկ ստորոգեալս է զայլմեցն, որ ի վերայն անցեալ լինի շարաւութիւն:

Իսկ տրամաբանականն տարբերի հարցմամբ և պատասխանեաւ՝ հակադարձաբար: Եւ զանազանի հարցականն ձայնիւ և կարճարաութեամբ, և ասի քննական, տեղական, ուսումնական: Իսկ պատասխանականն զանազանի ներածութեամբ և շարադրութեամբ, և ասի՝ ցուցական և հաստուցական և հաւանական, և դարձեալ՝ [ըստ] ստորասութեան և ըստ բացասութեան, և ասի հաստաբանական՝ հակադրութեամբ ճառեցելովք:

### Յաղագս իմաստակութեան և վերլուծութեան

Իմաստակութիւն է ըստ համանուն և ըստ փաղանուն, ըստ այլ և ըստ այլ թ[ո]ւոյ, ըստ այլում և ըստ այլում ժամանակի և զաւրութեան, ըստ այլպէս և ըստ այլպէս շարժման և տեղոյ:

Իսկ վերլուծական է քակտումն և որոշումն հիւթից և մասանց և ձայնից:

Այսք են բանական արհեստին տեսակք, որք ի բնութեան կարգեցան:

---

² բնագրում՝ Գ. ‖ չորս ⁵ Զ. ‖ վեց ⁸ Զ. ‖ վեց ⁹⁻¹⁰ ԲԺ. անեկին ‖ երկոտասանեկին ¹³ Այս թվաշարքը թվում է աղավաղված, թերևս եղած լինի Ա. Ժ. Ճ. Ռ, Դ. Գ. Բ. Ա և կամ Ա. Բ. Գ. Դ. Ե. Զ. Է. Ը. Թ. ²² յերկուցունց ³⁰⁻³¹ յանախակաւն:

²¹ բնագրում՝ և ի ներքոյկացելոց ⁴⁵ բնագրում՝ կարգեցաւ:

# [ՅԱՂԱԳՍ ՏԵՍԱԿԱՆԻՆ]

## Յաղագս խնդրականի և դիտաւորականի

*Խնդրականին չորք են տեսակք: Զի է որ ձայն մի և իրն զանազանեալ, և է որ իրն մի և ձայնն, և է, դարձեալ, որ հասարակ՝ ի ձայնն և իրն, և է որ յարակցեալ վանգիւ մի մի կամ փաղառութեամբ: Եւ ասի սեռ և տեսակ, զի սեռ է ըստ ենթիւ զանազանութեան իրին և ձայնին, և տեսակ է ըստ հասարակ ձայնին և իրին. իսկ թիւ՝ ըստ յարակցութեան վանգին կամ փաղառութեան:*

*Իսկ դիտաւորականն բաղկանայ յիրէ և յիմացուածէ և ի ձայնէ և ի գրեցելոյ: Քանզի իրն է անիրին նշանակ, և իմացուածն իրին, իսկ ձայնն իմացուածին, և գրեցեալքն ձայնից են նշանակք: Եւ ասի պարզ և շարադրեալ, զի է, որ իմացուածն և ձայնն, և է, որ ձայնն շարադրեալ և իմացուածն:*

## Յաղագս անմեկնելի որոշման [և] ստորոգութեան էակացս

*Անմեկնելի որոշման երկու են տեսակք՝ գոյացութիւն և պատահումն. քանզի ուր գոյացութիւն՝ և պատահումն, և ուր պատահումն՝ և գոյացութիւն:*

*Այլ ըստ նախկնի և ըստ բարձմանն որոշի գոյացութիւն ի պատահմանէ. և դարձեալ, է որ ըստ քառակին զանազանի, զի է, որ զենթակայէ ասի և է, որ յենթակայում է. և է, որ ոչ յենթակայում է և ոչ զենթակայէ ասի, ըստ առաջին գոյացութեանն:*

*Իսկ ստորոգութիւն էակացս առաջինն ի չորս բաժանի՝ ի սեռ և ի տեսակ, ի տարբերութիւն և ի յատուկ:*

*Եւ սեռ եռակի ասի՝ ըստ սերման գոյացութեան և ըստ յոլովման ազգի, յորմէ ցուցանի ածումն, և ըստ ինքեան բաժանի ի տեսակս հինգ՝ եռակարար, որք ասին տեսակագոյնք և սեռականագոյնք, որք է գոյացութիւն, մարմին և անմարմին, կենդանի և անկենդանի, զգայուն և անզգայուն, բանական և անբան, տեսակ և անհատ:*

*Եւ տեսակն բաժանի քառակարար. զի է, որ ի ներքոյ սեռի դասի, և է, որ սահմանաւ ունի զսեռն և սեռն զնմանէ իբրև զենթակայէ ասի: Եւ դարձեալ, սահմանի տեսակն և սեռն ի զինչէումն և ըստ զոյգ յոլովմանն, և է, որ ի վերնագոյնսն տեսականաց և ի ներքինսն սեռանայ:*

*Իսկ տարբերութիւն եռակի բաժանի՝ ի գոյացութիւն և ի պատահումն, անջատական և անանջատական. է, որ անեղծանելի և է, որ դժուարաշարժելի. և հասարակաբար ասին վասն ընդդիմակացն:*

*Իսկ յատուկն քառակարար ասի, զի է*

---

[1] Գլուխն ամբողջությամբ պահպանվել է միայն ընդարձակ խմբագրության մեջ: B և D ձեռագրերն ունեն միայն երկրորդ ենթագլուխը՝ «Յաղագս անմեկնելի որոշման և ստորոգութեան էակացս» [2] բնագրում ենթագլխի վերնագիրն է՝ «Յաղագս ի ձեռն խնդրականի, զոր ի տեսականէն առաջրեցին», [4] Գ. ‖ չորք [21] D անմեկնելի է [22] B չիք ստորոգութեան էակացս, D ի ստորոգութիւնն ‖ ստորոգութեան էակացս [23] D անմեկնել [24] A առս և ամենուրեք՝ գոյացութիւն, B պատահմունք [25] B գոյացութիւն է, և որ պատահումն է [25—26] D և ուր պատահումն է և գոյութիւն ‖ քանզի—գոյացութիւն [27] B ըստ նախ տեսակն է ‖ ըստ նախկնի, B ըստ բաժանմանն, D ըստ բաղձմանն ‖ ըստ բարձմանն [28] B որոշ է [29] D չիք որ, D ըստ քանակին ‖ ըստ քառակին: [30] BD ասէ [30—31] B չիք և է որ յենթակայում է:

[1—2] D որով յենթակայում է և ոչ զենթակայէ ասի ‖ որ յենթակայում ասի, B ենթակայում, B ասէ, D յառաջին գոյացութեան [3] B առաջին [4] 22. Գ. ‖ չորս, D ի [չորս] ‖ և ի [6] B ըստ ամենայն սերման [6—7] A գոյութեանն ‖ գոյացութեան [7] D ըստ ոլովման [8] A որ ի միոյ, D որ միոյ ‖ յորմէ, A ըստ ինքեանց [10] D որ ‖ որք, A տեսագոյնք ‖ տեսակագոյնք [10—11] A եռականագոյնք, D չիք և սեռականագոյն [11] B գոյացութիւնք [12] D անկենդան [13] A անզգաուն, B զգայուն և անզգայուն [14] A անհատ, B է անհատ ‖ և անհատ [16] AB ներքոյ ‖ ի ներքոյ, B դասէ [17] A սահմանիւնի, B սահման անուանի ‖ սահմանաւ ունի, D ի սահմանաւ, B զսեռն ‖ սեռն, [18—19] A սահմանէ [19] D սեռ [20—21] B ի վերնագոյնումն, D ի վերնագոյն ‖ ի վերնագոյնսն [23] B տարբերութեան [24] A գոյութիւն ‖ գոյացութիւն, D ի ‖ և ի [24—25] D անջատականն, AD անանջատականն [25—26] B անեղծանելի է [26—27] D հասարակաբարն ‖ հասարակաբար ասին [27] B զիմակացն ‖ ընդդիմակացն:

որ միայնում, և է որ ամենին և զարձեալ, է որ միայնում և ամենին, և է որ հակադարձին, ըստ կատարելութեան յատկի:

Իսկ երկրորդ ստորոգութեանցն ի տասն բաժանի՝ ի սեռս, որ է գոյացութիւն, որակ, քանակ, առինչ, ուր, երբ, կալ, ունել, առնել, կրել:

Եւ են մասնականք, որ ըստ շարամանութեան կատարին, զի լինի ստորասութիւն կամ բացասութիւն և արդար կամ սուտ, և ասին հաստատակապար և յատկապէս:

Արդ, երրորդն՝ իսկագոյն և տիրագոյն, նախկին և կատարեալ ըստ ամենայնի, իսկ այլքն ամենայն պատուոյ ասին: Եւ բաժանի յերկուս՝ առաջինն է անհատ և առաջին թուեալ, և երկրորդն չորս է՝ տեսակն և սեռն, ըստ զոյգ յոլովութեան, և յատուկ է ըստ միայնումն: Եւ քանակին է, որ տարորոշ է, և է, որ շարունակ, և այնք, որ գիր ունին. և տարորոշ է բան և թիւ. շարունակ է գիծ, մակերեւութիւն, մակարդակ, տեղի, իսկ ժամանակ՝ բան և թիւ յաւէտ զառ ինչ ունել, և յատուկ է ըստ ամենայնին:

Եւ առինչին չորք են տեսակք՝ ունակութիւն, զգայութիւն, մակացութիւն, դրութիւն:

Իսկ նիստ և ընդկոզմանումն և ընդկայութիւն՝ յարանունապար ի դրոցն ասին և ի յատկէ ըստ հակադարձին:

Եւ որակն քառակի ասի՝ ըստ ունակութեան և ըստ տրամադրութեան, ըստ զաւրութեան և ըստ ախտի, ըստ զառնութեան և ըստ քաղցրութեան, ըստ ձևոյ և ըստ կերպի: Եւ յատուկ է ըստ միայնումն և ըստ ամենայնին:

Իսկ ուրն և երբն՝ ըստ քանակին ասին, իսկ կալն և ունելն՝ ըստ առինչաւնակին, և առնելն և կրելն՝ ըստ որակին:

## Յաղագս ընդդիմակայից

Ընդդիմակայքն քառակապար ասին: Զի է որ առինչաւնականպէս, և է որ ներհակաբար, և է որ ունակութէն և պակասաբար, և է որ ստորասութեամբ և բացասութեամբ. և մին առանց նախկնի ընդդէմ միմեանց: Իսկ պատճառ մակադրութեան նախերգութեամբ դասի: Զի է ըստ ժամանակի, որ հնագոյն և վաղագոյն ասի քան զնորն, և միոյ նախկին քան զիմացմունս, և տեսութիւնք քան զտեսուածս, և տաղք քան զփաղասութիւնս, և մին քան զերկուսն, և ասի առանց հակադրութեան: Իսկ մասնական վերաբերութիւն՝ առանց հակադրութեան և առանց հոլովման ժամանակի, այլ ըստ միում մասին ժամանակի լինելութիւնքն վերաբերին, ըստ հոլովման անւան տեսակի ածանցիցն, ըստ յեղանակ վարդապետութեան:

Ըստ շարժման բաժանի ի տեսակս վեց,

---

[1] BD ամենայնի || ամենին [1—2] B չիք և զարձեալ—ամենին [2] D ամենայնին || ամենին [4] BD յատկին [5] B իսկ է [6] B սեռ, D ի սեռ || ի սեռս, A գոացութիւն, B գոյութիւն [8] B ուն || ունել [11] D բացութիւն || բացասութիւն [11—12] B արդ պատկանաւոր || արդար կամ սուտ և [14] BD Գ. [երեք] են || երրորդն, D տիրագոյն [16] A ամէն || ամենայն, B պատուհմունք [18] B անաջինն || առաջինն, թերևս ուղղելի՝ անհատ ինն, B թուել, [18—19] A երկրորդ Դ. է տեսակս, B երկրորդ, չորրորդ է տեսակ, D երկրորդն է տեսակն [19] AB յոլովութեանն [20—21] AB քառակին, D բառակի || քանակին (ուղղում ենք ըստ Արիստոտելի «Ստորոգութեանց» հայերեն բնագրի) [22] D տարրոշ է [23] BD շարունակէ || շարունակ, B այն, D գիծն [23—24] BD մակերեւոյթ || մակերեւութիւն [24] B և մակարդակ, «տեղի» բառից հետո 22 ունենք՝ «և ժամանակ և է որ գիրն (B գիր) ունին, գիծ, մակարդակ, տեղի (A տեղ), մակերևութիւն», նախորդ տողերի աղավաղված կրկնութիւնն է [25] AD թիւն [26] D ամենայնի [27] A առաջինն, B առին, D յառաջին ուղղում ենք՝ առինչին, B չորեք D Դ. [չորք] || չորք են, B տեսակ ունակութեան:

[1] A զգաութիւն, B մակացութեան [2] B դրութեան [3] BD ընկոզմանումն [4] BD յարանուն և բարի || յարանունապար, AD ի դրոյն || ի դրոցն [5—7] B չիք ըստ հակադարձին — ունակութեան և [7] B ըստ տրամատութեան || տրամադրութեան [8] B ըստ զօրութեան ըստ զօրութեան [10] A ձևո, D կրպի [11] A միայնումն || ըստ միայնումն, B ըստ միայնում, D ըստ միայնում [11—12] B ըստ ամենայնում, D ըստ ամենայնումն || ըստ ամենայնին [12] B երրն || և երբն [12—13] D ըստ քանակի [13] A ունել [14] B առինչունակին ասին [16] բնագրում Յաղագս զանազանութեան ուղղեցինք Յաղագս ընդդիմակայիցն [30] բերաբերութիւն || վերաբերութիւն:

որ է՝ լինելութիւն, ապականութիւն, աճելութիւն, նուազութիւն, այլայլութիւն, ըստ տեղո փոփոխութիւն։ Եւ առ ի ըստ դիմակայութեանն և ըստ մակադրութեան և ըստ մասնական վերաբերութեան։ Արդ, են զանազանիչք սոքա առաջին և երկրորդ ստորոգութեանցն՝ սեռի և տեսակի, տարբերութեան և յատկի, գոյացութեան և քանակի, առնչականի և որակութեան։

## ՅԱՂԱԳՍ ԻՄԱՑԱԿԱՆԻՆ

[Յաղագս չարի և բարւոյ]

… Եւ դարձեալ զանազանի նախադասութեամբ ըստ սկզբանն բարին և ըստ կատարածին չարն։ Իսկ որ ընդ մէջ ի բաղկանայ [°] ըստ չարս իմն տեսակս տարբերի՝ ըստ ներածութեանց և ըստ ձայնից և ըստ ներգործութեանց, որ առ ի մեզ կամ արդարութիւն։

Զորրորդ, վասն զի է, որ բնութեամբ է բարի և չար և է, որ պիտակարար։ Բնութեամբ է, որ զբնակ[ան]ութիւնն անեղծանելի և դժուարափոխ[ելի], զի թէև փոփոխումն առնու, անդրէն ի նոյն՝ ի բնական սահմանն հաստատի։ Իսկ պիտակարար է, որ ոչ բաղկանա բնականութիւն սահմանի, և դարձեալ դիւրաշարժ ի պատահմունս ենթակային։

Արդ՝ բնաւորեցաւ բարին բնութեամբ, իսկ չարն առանց բնութեան և սահմանի։ Զի բարին, թէ ի չարն յեղաւ, ոչ միայն չար կա[յ], այլ ի նոյն դարձեալ փոփոխի բնութեամբ։ Իսկ չարին փոփոխումն առնուլ բարի՝ միանգամայն բաղկացաւ բնութեամբ։

Հինգերորդ, զի ըստ տեսակին բաժանման՝ բարին ի գոյացութենէ և չարն ի պատահմանէ ստորոգեցաւ։ Եւ դարձեալ ի չորս արամատեալ լինի. զի է, որ բարի, և է, որ չար, և է, որ չար և բարի, և է, որ ոչ չար և ոչ բարի։

Արդ, զի են ի սոցանէ, որ կրին ի ներքուստ և վարին արտաքուստ։ Քանզի բարոյն և չարին իմանալի է ի շարժմանէ և ի նիւթո առնուլ զբաղկացութիւն։

Եւ որոշեալ զանազանի նախկնութեամբ շարժումն ի նիւթոյ, որ բարոյն է գոյացուցիչ, իսկ նիւթ յետո քան զշարժումն՝ չարին է բաղկացուցիչ։

Իսկ գոյացութիւն ըստ չորից իմն է խառնից՝ ի հրամանէ և ի վարմանէ և ի սառուցէ և յերեմանէ։ Այսոքիկ սահմանեալ երկակի որոշմամբ. հրաման է պատճառ վարման՝ յորմէ բարի առ ի, իսկ սառուցն պատճառ երեման՝ յորմէ չար առ ի։ Եւ դարձեալ հրամանն հաստուկ և անխառն ի միջի նոցայ և յանսահման ձայնով, իսկ վարմանն տեղիտանալ ի սառուցէն, և երեմանն ի սառուցէն զորոշումն առնուլ, ի նոյն սահման էակին զբաղկացութիւնն առնլով՝ սեռիւք և տեսակաւք և նիւք և ծնընդիւք և ձեւոք և գունովք։

Արդ, յայտնեցաւ չարն եղծանելի և որոշիչ բարոյն, իսկ բարին հանապազ անապական և ընդունակ յեղման չարին։

## Յաղագս կատարեալ գիտութեան բանի

Կատարեալ բան է ի մասանց և յանհատից և ի տեսակաց և ի սեռից և ի թուոց։ Քանզի իւրաքանչիւր ոք սոցա զկատարելութիւն առնուն, իսկ համանգամայն սոքա կատարելագոյն առին։ Իսկ որ ի միմեանց բաղկանան, անկատարք զան և ոչ կատարեալ բանք։

Առաջին, իսկ ըստ այլոցն խնդրոց, ի ժամանակի ըստ շրջագայութեան մասանցն՝ Ա. Բ. Գ. Ե. Գ. ԺԲ. ԻԴ. Ե. Է. ԺԱ. ՂԱ. ՅԿԵ. Ծ[Բ]. ԺԲ. Գ. ԺԵ. ԺԹ.

[10] «Որակութեանն» բառից հետո ձեռագիրը ունի հետևյալը՝ «Այսք են տեսականն արհեստին տեսակք, որ յեականութեանն կարգեցաւ։ Կատարեցաւ Բ. որոշման արհեստիւ, որ առ ի տրամաբանութիւնն»։ Կարծում ենք հավելված է թարգմանչի կողմից։ [11] Սույն գլխից նախորդ խմբագրության մեջ պահպանվել են միայն վերջինը՝ «Յաղագս ունայնին» և «Յաղագս անբաւին» ենթագլուխները, վերնագրել ենք մենք։ [12] վերնագրի փոխարեն ձեռագիրը ունի՝ «այլ բան» [16] «չարս»-ի փոխարեն բերևս պետք է լինի «երիս» [20] բնագրում՝ Դ. կարդում ենք «Զորրորդ»։

[39] Բնագրում՝ Ա. ‖ առաջին. [39—40] զի ժամանակի ‖ ի ժամանակի [41] Ծ [Բ]-ի միավոր թվանշանը հազիվ է նկատվում։

ԻԸ. Ժ.* առնուն զկատարումն իւրաքանչիւր սահմանքս: Իսկ համանգամայն առքս, ի վերագոյն հատածն կատարելագոյնք առ[ին և] զանդրէն զատութիւնն առնուն, որ ՇԼԲ. Գ...ակ, որ ի միմեանցն զոյանան, ըստ հոլովման բանիցն և անւան հատիցն անկատարք առորդին:

Երկրորդ, զանազանի և ըստ սկզբան և կատարածի կատարելական բանին: Քանզի ըստ կատարածին կատարեալք ասին ամենայն լինելոցքս և եղեալքս: Եւ ոչ ըստ հոլովմանցն կատարիլք, այլ յիւրաքանչիւր սահմանս, որ ինչ եղելոցն էր՝ կատարեցաւ, և որ ինչ լինել հարկի՝ զկատարումն առնու: Այլ է ընդ մէջ և ամանակ ըստ ներկաումն: Արդ, ըստ վերաեուութեան երկակի առքս զկատարելագոյն բաղկացուցանեն բանս: Իսկ ըստ սկզբանն ոչ է կատարեալ. զի որ ներածեն, կամ առեն, կամ ներգործեն ի մէջս բաղկանաց և կամ ոչ է իսկ մարտուցեալ:

Երրորդ. արդ, ըստ բնութեան սահմանական ի յնթակաէ և ի կատարմանէ, ըստ հուպ և ըստ զանազանութեան քառակին իւրաքանչիւրովքն կատարեալք ասին, իսկ ընթանուր հատածքն՝ ինակի սահմանացն զերակատարելով: Եւ ըստ արարչականին է, որ միայն զաեռակն զոյացուցանէ անկատար գոլով և ոչ կատարեալ բանս: Քանզի ըստ էակին է ի նախազ[աս]ու[թիւն]ն յէականացն բաժանումն ի առորդութիւն, իսկ յիւրաքանչիւրսն կատարեալ և յամենայնէն կատարելագոյնն:

Չորրորդ. իսկ ըստ բաժանման պատահմանցն վասն առոյգ պատահին և յենթականումն գոլ, անկատար եղեալ և ոչ կատարեալ:

Հինգերորդ. իսկ ըստ վենագոյն և ըստ ներարհեստիս է քառակն, յորմէ ամենայնքն զբաղկացութիւն առեալ սահմանեցան. յիւրաքանչիւրսն առքս կատարեալք ասին: Իսկ ըստ անբաւին անխառնութիւն զերազանցեալ ասի: Եւ դարձեալ յերիցն եւ, որք ի քակումն և յեղծումն զիմեալ միշտ անկատար և ոչ կատարեալ բանս:

Արդ, երեւեցաւ կատարելութիւն բանի եռակի տեսութեամբ ըստ մասանց, որ յիւրաքանչիւրսն սահմանին. իսկ համանգամայնքն կատարելագոյնք, և որք ի միմեանց իմանին զազցութիւնքն, անկատար գոլ և ոչ կատարեալ բանս: Քանզի զերազանցեալն ի կատարմանն բաղկանա և ոչ յանկատարէն, զի անկատարքն կատարելականին են մասունք, որ շարադրին:

Այսքան է կատարեալ գիտութեան բանս:

## Յաղագս ժամանակի

Ժամանակ է որոշումն ըստ ամենայն մասանց, եռակի և արընդդէմ խաղացումն տրամադրութեամբ, չափք բերմանց իւրաքանչիւրոցն և ըստ յեղման շրջագայիցն, յորս թիւքն բաղկացեալ յանդին. որ է ԵԸ. ԺԲ. ԻԴ. Էէ. ԺԲ. ՂԱ. ՅԾԴ. ԺԱ. ԺԲ. Գ. Ե. Ը. ԺԵ. ԺԹ. ԻԸ. Ժ. ՃՂ. ՆԾՁ. ՇԼԲ. ԺԴ. ՋԴ. այսչափ են թիւք շրջագայիցն, որ կարգաւք ցուցեալ լինին՝ մասունք, ժամք, աւուրք, շաբաթք, ամիսք, յեղանակք, ամք, շրջանք, դարք, կատարմունք ժամանակաց: Իսկ ըստ նոցա և թիւք պատշաճին, քանզի են, որք ի միմեանց բաղկանան, և են, որք սկսանին, և այլք զկատարումն

* Այս աղճատված թվաշարքի ընդհանուր իմաստը պարզ է: Այստեղ նշված են տոմարական այլևայլ միավորներ: Այսպես, առաջին թվանշանները (որ համանորեն պետք է սրբագրվեն՝ Ա. Բ. Գ. [Դ] Ե. Զ. [Է] ձևով) շաբաթվա օրերն են, ԺԲ.—օրվա «մասերը», ԻԴ. օրվա ժամերը, Ե.—«հնոնոս» (տես Ան. Շիրակացի, Տիեզերագ. և տոմար, էջ 70), Է.—շաբաթվա օրերի քանակը կամ «եօթներեակ», ԺԱ.—արեգակնային և լուսնային տարիների տարբերության օրերով, ՅԿԵ.—տարվա օրերի քանակը, ԾԲ.—տարվա շաբաթների քանակը, ԺԲ.—ամիսների քանակը, Դ. (գուցէ՞ Դ.)—եղանակները, ԺԵ.—«ընդիքտիոն», ԺԹ.—«իննեւտասներեակ», ԻԸ.—«քառնութեակ»:

¹ Առնուն ‖ առնուն ⁴ «առ[ին և]» ջնջված է ⁵ «Գ. ... ակ»՝ ջնջված է, ⁸ Բ. ‖ երկրորդ, ¹¹ ա ‖ ամենայն ²³ Գ. ‖ Երրորդ ³¹ Գ. քն.գի (երրորդ քանզի) ‖ Քանզի:

⁴ Դ. ‖ Չորրորդ ⁸ Ե. ‖ Հինգերորդ ⁹⁻¹⁰ ամե ‖ ամենայնքն ²⁸ վերնագրված է՝ «Յաղագս ժամանակի, սահմանքն» ²⁹ «որոշումն» բառի «ն»-ն ջնջված է ձեռագրում:

տանուն։ Եւ դարձեալ որք կատարինն այլոցն մէջ բաղկանան կամ ոլորտք։ Իսկ ընդհատասանեակն քանութիւք կատարեալ համանգամայն տեսակուքն, որք են շրջանակք. ժԴ. և ՁԴ. ամք եկամուտ, որ ոչ դասի ի զգալիս կենցաղական վարուց աշխարհիս։ Այլ ըստ կատարման երեքտասանիցն՝ լրումն և քակտումն բաղկանա համանուտ և զանազան տեսակի բոլորիս, և յանհատանուտ և յանզանազան տեսակն չլինել հարկի, որ է անժամանակ։

Առաջին. Իսկ ըստ այլոյն բաժանի ժամանակ ի տեսակս հինգ, որ է սկիզբն բոլորին և կատարած բնութեանց և զ[ուգո]ւթիւնք յեղմանց և չափք միջոցացն և.... մանցն համածք։ Արդ, որք հետևին այսմ՝ անժամանակ ասի։

Երկրորդ. Իսկ ի բնութեան ըստ արարչին չորիւք զանազանի տեսակաւք, որ են ածանցականք յիւրաքանչիւրոցն ենթակայիցն, որք ասին համանգամայնք։ Եւ ոչ նախկին կամ վերջին ժամանակ ինչ բաղկանա։ Այլ իւրաքանչիւր սահմանքն զգատութեանցն ժամանակաւ յայտնին ըստ զաւրութեանց խառնից կամ կրից։ Զի լուծումն զգատութեանցն յերկուսին բաղկանա։ Զի և որ ըստ այսոցիկ ոչ է՝ անժամանակ ասի։

Երրորդ. Իսկ ըստ էականին ի բաժանմունս պատահից բնաւորեցաւ գալ, ըստ շարունակութեան առկա գրից և զատաւորութեան։ Զի շարունակ է ըստ ինքեան, ի վերա պատահիցն և գոյացութեանցն։ Իսկ վերագոյնքն քան զսոսա անժամանակ ասին։

Չորրորդ. Իսկ բաղկացութիւն ժամանակի ըստ քառակին է՝ ի նիւթից և [ի] շարժմանէ ի սահմանս ունայնին վարել կատուցմամբ, ի հրամանէ անեղին բնութեան։

Արդ, երևեցաւ ժամանակ եռակի տեսութեամբ ըստ բոլորին, զի է որ ըստ յերկարման առեալ վասն ծննդից անհատիցն բազմութեանց և զատութեանց վարման պատահիցն։ Իսկ յառաջ քան զբոլորն և զկնի՝ անժամանակք ասին և ոչ այսք բաղկանան։

## Յաղագս սկզբան և կատարածի

Քանզի է սկիզբն և կատարած՝ նիւթական, տեսական, հիմնական, գործական։ Եւ բաժանի ըստ արարչութեանն և ժամանակի։ Քանզի սկիզբն, ըստ արարչութեանն և կատարած ըստ ժամանակի։ Զի է սկիզբն, որ կատարած է, և է կատարած, որ սկիզբն, և է սկիզբն, որ [ոչ] կատարած է, և է՝ որ ոչ կատարած և ոչ սկիզբն։ Իսկ ըստ այլոյն է խնդրոց. զի ի բնութեան ըստ քառակին զանազանի, զի է, որ հուպ սկիզբն և հուպ կատարումն, և է, որ հեռի սկիզբն և հեռի կատարած։ Եւ բաժանի սկիզբն ըստ առաւելութեան և կատարած ըստ ստուգաբանութեան։

Առաջին. Իսկ յէականութեանն զանազանի սկիզբն ըստ գոյացութեան և կատարածն ըստ պատահման։

[Երկրորդ]. և դարձեալ ընթանայ և մասնական գոլով, զի է, որ սկիզբն է և է, որ կատարած յենթակայումն, և է, որ սկիզբն և ի նմին կատարած, և է, որ ոչ սկիզբն և ոչ կատարած։

Երրորդ. զանազանի և ըստ շարժման և ըստ նիւթոյ։ Քանզի սկիզբն ըստ շարժման նախէին գոլով, իսկ կատարած ըստ նիւթի վերջին գոլ։

Քանզի գտանի բոլորն ըստ քառակին երկրկիմի բաժանմամբ՝ ի նիւթոյ և ի շարժմանէ և յունայնէ, որ է սկիզբն և կատարած, և ընդ մէջն՝ յեղումն ըստ շարժման և ըստ նիւթի։ Եւ ամանակ եռակի տեսութեամբ՝ յարաձգական, գնակատար, անորիշ, որ է ըստ ունայնի հոլովման չափուցն։ Իսկ ըստ աներութեն էակ անսկիզբն, անկատարած, անյեղլի,

---

[3—4] ԻԾ. իւք կատարեալ [5] ժԴ. ինն || երեքտասանիցն [13] Ա. || Առաջին [17] «... մանցն» բառի սկզբի 4 տառերը ջնջված են [19] Բ. || Երկրորդ [20] Դ-իւք || չորիւք [25] «զգատութեանցն» բառից հետո գրված և ջնջված է՝ «յերկուսին բաղկանա» [30] Դ. || Երրորդ [37] Դ. || Չորրորդ։

[7] Ձեռագրում վերնագրված է՝ «Յաղագս ածխաւութե [աստուածաբանութեան] սկզբան և կատարածի, առանձին» [23] Ա. || Առաջին [31] Դ. || Երրորդ։

անժամանակ, աններկա, անանցեալ, անապառնի. և է դարձեալ գոյացուցիչ սկզբան և կատարածի և որ ընդ մէջն են բաղկացութիւնք։

Արդ, երևեցաւ սկիզբն և կատարած նախկի իմացութեամբ՝ զի է, որ անսկիզբն է և է, որ անկատարած։ Իսկ սկիզբն և կատարած ընդ մէջն բաղկաց[ան] յոքնակի հատուածիւք։

## Յաղագս բնութեան

Բնութիւն է սահմանական և արարչական։ Սահմանական է բնական և հաստատուն, իսկ արարչականն է անբնական և անհաստատ։ Քանզի բնականն ի սեռէ և ի բաղկացուցիչ զանազանութեանց, և անբնականն է շարժումն անտակացն և յեղումն նմանից և աննմանից։ Եւ թիւքն հանդէտ ի պարզաբար անհատան բաղկանան։ Իսկ դարձեալ, է բնական, որ սահմանի ի սեռէ և ի բաղկացուցիչ զանազանութեանց և է, որ սահմանադրի անուամբ, և է, որ առաւելու ըստ նուազութեան բառիցն և պակասի ըստ յոլովման։

Իսկ ըստ էակին զանազանի սահմանականն ըստ գոյացութեան և արարչականն ըստ պատահման։ Եւ դարձեալ, է, որ սահմանական է, և է, որ արարչական, որ յենթակաւմ, և է, որ սահմանական և ի նմին արարչական, և է դարձեալ, որ ոչ սահմանական և ոչ արարչական։

Իսկ բաղկացութիւն բնութեան է ըստ քառակին։ Քանզի անրուն է պարզ և անշարագրելի, և նիւթ և շարժումն՝ խառն և խուռն շարադրութեամբ, իսկ ունայնն՝ ընդ մէջսն, պատճառ որոշման գոլով։

Արդ, է բնութիւն նախկի բաժանմամբ, զի է, որ պարզ է ըստ սահմանականին, և է, որ շարադրելի ըստ արարչականին, դարձեալ, է, որ ընդ մէջսն կցորդին։ Զի շարադրելին ի պարզէն բաղկանայ, իսկ պարզն ի շարադրականէն զերևումն առնու։

[10] վերնագրված է «Յաղագս բնութե. առանձին» [12] բանական || բնական [25] Ա. [առաջին] Իսկ || Իսկ [32] բնութիւն || բնութեան։

## Յաղագս էականութեան

Էականութեան երկու [են] տեսակք՝ զգալի և իմանալի։ Զի ի զգալւոյն անզգալին և յիմանալոյն անիմանալին։ Քանզի գոյացութիւն յանզգալոյն առի, իսկ պատահումն յանիմանալոյն գոլ։ Եւ է գոյացութիւն ընթանուր և պատահումն մասնական։ Եւ դարձեալ, պատահումն է ընթանուրն իսկ գոյացութիւն մասնական։

Առաջին. և զանազանի ըստ քառակին։ Քանզի անրուն ընթանուր առի ըստ գոյացութեան, և ունայն՝ մասնական ըստ պատահման, իսկ նիւթ՝ մասնական ըստ գոյացութեան, և շարժումն ընթանուր առի ըստ պատահման։

Երկրորդ. իսկ գոյացութիւն էականութեան ըստ քառակի բաժանի։ Քանզի անրուն է առի, առանց սկսման և դադարման, և շարժումն և նիւթ՝ էակ, ի ձեռն սկսման և կատարման։ Իսկ ունայն ոչ է առի ոչ էակ, այլ հոլովի ըստ պիտանացուին անուամբ և բառի։

Արդ, երևեցաւ էականութիւն եռակաբար։

Զի է, որ հաստատական է ըստ զգալւոյ և անիմանալւոյ և, դարձեալ, որ յերկուցունց՝ ըստ գոյացութեան և ըստ պատահման։

## Յաղագս շարժման և նիւթի

Արդ, ամենայն ինչ շարժումն, ի շարժմանէ նիւթ և, դարձեալ, ամենայն ինչ նիւթ և ի նիւթոյն շարժմունք։ Այսոքիկ իրք և իմացեալք, տրամաբանեալք և ներգործեալք։ Զի որ շարժումն է՝ և նիւթ, և որ նիւթ է՝ և շարժումն։ Քանզի գոյացուցիչք են միմեանց։ Զի նիւթին կերպումն և ցրումն և խառնումն և ցամաքումն ի շարժմանէ բաղկանայ, իսկ շարժմանն լինելն և ապականելն, աճելն և նուազելն, այլայլելն և փոփոխելն ի նիւթս բաղկանայ։

[1] Վերնագրված է՝ «Յաղագս էականութե. առանձին» [3] զգալոյն [11] Ա. || Առաջին [17] Բ. || Երկրորդ [27] յերկուցունց [29] Վերնագրված է՝ «Յաղագս գոյացուցիչ և մշտարուխ քառակին, որ է ածաբանական [աստուածաբանական] շարժման և նիւթի, առանձին» [30] ա || ամենայն [38] Դ. [չորրորդ] իսկ || Իսկ։

Առաջին. և զանազանի ի շարժումն յընթականալն ըստ նմանութեանն յունայնի: Իսկ նիւթին յընթականալն՝ ըստ թանձրութեանն շարժման, և յունայնէն զերեւումն առնուլ:

Երկրորդ. իսկ ըստ անբաւին է անշարժ և աննիւթ, զի անխառն տարի: Քանզի շարժումն և նիւթ յանշարժէն և յաննիւթէն բաղկանա, իսկ զադարումն և ի նիւթէ և ի շարժմանէ, որ է տասկարար տացութեամբ:

## Յաղագս ունայնի

Ունայն տարի անիր անիմացուածն՝ անբան և աններգործեալ, և է որոշումն մարմնական և հանրական մասց: Զի է ի խառնս ընդ նիւթի և ընդ շարժման: Իսկ արտաքոյ՝ անբաւ տարի ի բաւականէ բոլորին, իսկ ըստ անբաւին բաւականեալ, այսպէս ետակարար տարի: Իսկ բաղկացութիւն ունայնի է ըստ այսոցիկ՝ զի ի գայէ և յիրէ անգոյ և անիր տարի. Եւ ի մշտակայութենէ և ի յաւիտենականէ անցական և անընական: Այլ ոչ որպէս ոմանք կարծեցին թէ իցէ ինչ, այլ է ոչինչ, քանզի և կարծեալն իսկ ընդունայն և անմայր տարի:

## Յաղագս անբաւի

Անբաւ է, որ ամենայնիւ է անբաւ, որ տարի բոլոր, անմասն և անտեսակ: Եւ է միտք և խորհուրդք, իմաստք և դիտութիւնք և տեսութիւնք ընդհանուր և անչափ:

Իսկ ըստ այլոցն է ըստ վեցեկին և ըստ չորրեկին: Քանզի անբաւ է ոչ բարի և ոչ չար, ոչ սկիզբն և ոչ կատարած, ոչ շարժումն և ոչ նիւթ: Ըստ այսոցիկ անել տարի. զի ոչ յայլմէ և ոչ յինքենէ ունել զգոյութիւնս: Եւ դարձեալ, ըստ երկրորդին է անբաւ՝ գերազանցագոյն, գերազանցագունիցն, անժամանակագոյն անժամանակագունիցն, ընականագոյն ընականագունիցն, էագոյն էագունից, ունայնագոյն ունայնագունից, անբաւագոյն անբաւագունից:

Ըստ այսոցիկ անհատագոյն տարի յէակացս, զի սահման քննութեանցս յանհունն զանցեալ գտանի: Զի ըստ այսոցիկ ոչ գոյ հասումն բնութեան երկրորդ անբաւին:

***

Իսկ ըստ չորրեկին միայն ծանութութիւն արարածոցն զարարիչն, ի բանաւորութենէ Աստուծոյ առ ազգս հրշտակաց և մարդկան: Եւ աստուածաբանելն երկու աստուածս իւրաքանչիւր առանձնաւորութեամբ, զի է, որ ծնող տարի, և է, որ ծնունդ, և է, որ ելող: Այլ այս ըստ մարդկային բնութեան երեւի, յաղագս զթութեան հօր և մարդասիրութեան որդւոյ և ողորմածութեան հոգւոյն: Քանզի երեք են՝ մի են բնութեամբ, կամաւք և արարչութեամբ: Նոյնպէս և ըստ հրշտակաց փառաւորեալ երիս անձինս՝ զարարիչ և զհաստիչ և զկազմիչ, որում տան սուրբ, սուրբ, սուրբ միանգամայն տէր զաւրութեանց: Փառք և պատիւ և գոհութիւն անեղին և անհասին և մշտնջենաւորին այժմ և յաւիտենից յաւ[իտեանս]:

---

1 Ա. ‖ Առաջին 6 Բ. ‖ Երկրորդ 12 A Յաղագս ունայնէ, առանձին, BD ունայնէին 13 D Ցունայն, BD անիմացուած 14 B աններգործելի, D աններգործել 17—18 B բոլումն իսկ ըստ անբաւականեալ ‖ բոլորին—բաւականեալ 18 D չիք իսկ, A բաւին ‖ անբաւին 19 BD առաջինն, A Ա. (առաջին) իսկ ‖ իսկ 20 D ունայնին 22 B մշտակցութենէ, D յաւիտենականութենէ 23 D առանցական ‖ անցական, A անընակ, B անբանական 24 B իցեն ինչ այլ և է, D չիք այլ է ոչինչ 25—26 D ունայն ‖ ընդունայն 26 B ընդմայր ‖ անմայր 27 B անբաւի 28 D Անբաւին ‖ Անբաւ է 29 B տաէ 30 B իմաստ 31 B ընթհանուր 32 BD անչափք 33 B այլոցն ‖ ըստ այլոցն, BD չիք է, BD վեցեկէ:

1 B չորեկի, D չորսեկի ‖ ըստ չորրեկին 3 D ազեղ ‖ անել 4 D ինքենէ, B ունի 5 B զչգոյութիւնս, «զգոյութիւնս դարձեալ» բառով ավարտվում է D ձեռագրի բնագիրը, B չիք Եւ 5—6 A ըստ Բ.-ին ‖ ըստ երկրորդին 6—7 B գերազանցագունին 9 B էակականագոյն ‖ էագոյն էագունից 10 A անունայնագունից ուղղում ենք՝ ունայնագունից, B անունայնագունին ‖ ունայնագոյն ունայնագունից 11 «անբաւագոյն—անբաւին» հատվածի դիմաց B-ն ունի «անբաւագուն անհաս ի յէակացս, զի ոչ քննի», որով և ավարտվում է B ձեռագրի բնագիրը:

Կատարեցան վկայեալքն, որ ի միմեանց սահմանին, և չորրեակքն որով հաւելին մասնականք սորին, և պլրութն էաւ երկոտասանեակն մասամբքն, և գերազանցեալ զատու յանհատիցն, ըստ իւրաքանչիւր մասանցն տեսակաց և սեռից։ Քանզի է խորհուրդ ամենայն եակի և իմացմունք ընթանուր արհեստ փիլիսոփայական և սահմանք ուսմանց, և թողլով որ ըստ աշխարհին են աումիչք արհեստ անյաղթ փիլիսոփայից։

Աստուած, Աստուած, Աստուած, փառք քեզ այժմ [և] յաւ[իտեան]։